սային և Կենտրոնական Ամերիկաներում (շուրջ 1,7 մլն), Եվրոպայում (շուրջ 1,7 մլն): Զգալի թվով հայեր կան նաև Վրաստանում (250 հազար), Հարավային Ամերիկայում (շուրջ 255 հազար), Ասիայում և Մերձավոր Արևելքում (շուրջ 460 հազար): Ամենամեծ համայնքների թվին են պատկանում Ռուսաստանի Դաշնության, ԱՄՆ-ի, Ֆրանսիայի, Ուկրաինայի, Վրաստանի, Արգենտինայի, Կանադայի, Ավստրալիայի, Լիբանանի, Իրանի համայնքները[2]:

Անընդմեջ տեղաշարժերն ու համալրումները հանգեցրել են Հայկական սփյուռքի բազմազանությանը: 1990-ական թթ. երբեմնի դասական հայկական համայնքները համալրվեցին Բաքվից և Սումգայիթից, ինչպես նաև Հայաստանից արտագաղթած հայերով, որոնք զգալի աշխուժություն մտցրին սփյուռքյան կյանքում, թեև սկզբնական շրջանում գրեթե անտեղյակ էին սփյուռքյան իրողություններին: 1946–1948 թթ. և 1960-ական թթ. Խորհրդային Հայաստան ներգաղթած հայերի մի մասն արտագաղթեց Հայաստանից, և Սփյուռքում առաջացավ մի խավ, որը լավ գիտեր և՛ հայաստանյան իրականությունը, և՛ Սփյուռքը: Հայկական համայնքներում առաջացան տարբեր շերտեր, խմբավորումներ՝ ըստ ծագման երկրի, լեզվի իմացության, եկեղեցական, կուսակցական պատկանելության, ըստ ունեցվածքի և այլն:

Սփյուռքի ընդհանրական պատկերի մասին ՀՀ Նախագահ Ս. Սարգսյանը նշել է. «Բազմադեմ է Հայկական սփյուռքը, բազմադավան ու բազմալեզու: Սակայն ամենից առաջ ու ամենից առավել բազմազոր է Հայկական սփյուռքը: Ու որքան էլ հակասական հնչի՝ լինելով առավել զորավոր, քան երբևէ, Հայկական սփյուռքն այսօր ապրում է պատմական ամենադժվար շրջանը և կարիք ունի հոգածության ու խնամքի: Առանց հոգածության ու խնամքի 15–20 տարում կուծանա այն զորավոր Սփյուռքը, որին նախանձում է աշխարհը»:[3]

20-րդ դարի վերջերին և 21-րդ դարի սկզբներին ևս Սփյուռքը ենթարկվել է կառուցվածքային փոխակերպումների: Պատերազմների, հակամարտությունների, տնտեսական ճգնաժամերի պատճառով էական փոփոխություններ են տեղի ունեցել Հայկական սփյուռքի կառուցվածքում. վերացել է Ադրբեջանի խոշոր հայկական համայնքը (մինչև 1990 թ. այստեղ ապրում էր կես միլիոն հայ), զգալիորեն նվազել է Միջին Արևելքի երկրներում և հատկապես Սիրիայում ապրող հայության թվաքանակը: Մերձավորարևելյան ճգնաժամի հետև-

[2] Թվային տվյալները ներկայացված են արտերկրում ՀՀ դիվանագիտական ներկայացուցչությունների և համայնքային կառույցների կողմից տրամադրված տեղեկությունների հիման վրա:

[3] Տե՛ս ՀՀ Նախագահ Սերժ Սարգսյանի ելույթը ԱՄՆ-ում ՀՀ դեսպանության, ՄԱԿ-ում ՀՀ մշտական ներկայացուցչության և ամերիկահայ առաջատար կազմակերպությունների կողմից կազմակերպած հանդիսավոր ընդունելությանը, 24.09.2008, http://www.president.am/hy/statements-and-messages/item/2008/09/24/news-18/:

անքով այդ տարածաշրջանի ստվարածավալ հայկական համայնքները զգալիորեն տուժել են՝ կրելով մարդկային, նյութական և բարոյական վնասներ, ինչի հետևանքով հայության մի մասն արտագաղթել է այլ երկրներ:

Հայկական սփյուռքի առանձնահատկություններն ու ընդհանրություններն առավել ընդգծվում են ըստ տարբեր շրջանների՝ Արևելքի, Արևմուտքի, Հարավային Ամերիկայի և ԱՊՀ երկրների հայկական համայնքների և այլն: [4] Հայկական համայնքների առաձնահատկություններն ու խնդիրները պայմանավորված են նաև տվյալ երկրի զարգացման մակարդակով, մշակույթով, սովորույթներով և այլն: Նրանք ունեն նաև իրավական կարգավիճակ: Յուրաքանչյուր համայնքի իրավական կարգավիճակը պայմանավորված է բնակության երկրի օրենսդրությամբ: Այսպես, Արևելքի որոշ երկրներում (Իրան, Լիբանան) հայկական համայնքները ճանաչվում են որպես ազգային-կրոնական համայնք, որի շնորհիվ իրենց ներկայացուցիչներն ունեն այդ պետությունների խորհրդարաններում ու կառավարություններում: Այլ երկրներում նրանք ազգային փոքրամասնություններ են կամ ուղղակի հասարակական կազմակերպություններ:

Այսօր Հայկական սփյուռքում կան քաղաքներ և գյուղեր, որոնք ամբողջությամբ կամ հիմնականում հայկական ինքնության յուրօրինակ կղզյակներ են: Այդպիսի հայաբնակ բնակավայրեր կան ՌԴ-ում, Աբխազիայում, Վրաստանում, Թուրքիայում, Լիբանանում, Սիրիայում:

Հայերին բնորոշ է օտար հասարակություններում արագ ինտեգրումը: Ինտեգրվելով տարբեր միջավայրերում՝ Հայկական սփյուռքը միաժամանակ կարողանում է պահպանել ազգային դիմագիծը, դավանանքը, լեզուն, սովորույթները: Սակայն համաշխարհայնացման պայմաններում դա հայ մնալու համար ամենօրյա պայքար է, որում հաջողություն ունենալու համար Սփյուռքը հարկադրված է գերլարված աշխատանք տանել:

Հայկական սփյուռքը տարիների ընթացքում ձևավորված, համահայկական և հայկական կազմակերպություններից ու հաստատություններից, ենթակառուցվածքներից ու տաղանդավոր անհատներից բաղկացած հսկայածավալ հանրույթ է, որը հայտնի է ամբողջ աշխարհում:

Հայը, որտեղ էլ հաստատվել է, իր հետքն է թողել, ստեղծել հայկական ցանցեր, եկեղեցիներ, կուսակցություններ, դպրոցներ, մշակութային կենտրոններ, տպարաններ, թանգարաններ, գրադարաններ, մասնագիտական ընկերակցություններ, բարեսիրական, կրթական, մշակութային, երիտասարդական, կանանց, մարզական կառույցներ, գիտահետազոտական և այլ հաստատություններ:

[4] Տե՛ս «Հայ սփյուռք» հանրագիտարան, 2003, 9:

Այսօր 821 համայնքներում (երկիր, քաղաք) հայկական կազմակերպությունների թիվը հասնում է 30 հազարի[5]: Դրանք իրենց գործունեությամբ համախմբում են հայության կարևոր հատվածը: Սփյուռքը ցանցային և կազմակերպված դարձրին 38 համահայկական, համասփյուռքյան հասարակական, եկեղեցական, մշակութային, բարեգործական կազմակերպությունները՝ հայ եկեղեցին, ՀՅԴ-ն, ՌԱԿ-ը, ՍԴՀԿ-ն, ՀԲԸՄ-ն՝ իրենց կից կառույցներով, որոնց լրացնում են կրթամշակութային, առողջապահական և մարզական միությունները, հանձնախմբերը, հիմնարկություններն ու հիմնադրամները: Այս կառույցները համախմբում, կազմակերպում և ամրապնդում են Սփյուռքը, կապող օղակ են հանդիսանում Հայրենիք-Սփյուռք և Սփյուռք-Սփյուռք հարաբերություններում, պաշտպանում են հայկական շահերն ամենուր:

Նշված կազմակերպություններն ավելի քան 20–50 երկրներում ունեն իրենց մասնաճյուղերն ու գրասենյակները: Հայաստանի Հանրապետության անկախացումից հետո գրեթե բոլոր համահայկական կառույցներն իրենց գրասենյակները բացեցին Հայաստանում: Այս կազմակերպությունների կենտրոնական մարմինները հիմնականում գտնվում են հայրենիքում, Լիբանանում և ԱՄՆ-ում:

Անգնահատելի է համահայկական կազմակերպությունների դերակատարությունը՝ Սփյուռքում հայ ազգային ինքնության պահպանման, հայրենիքի հետ կապերի ամրապնդման և ազգային խնդիրների լուծման գործում: Համահայկական կառույցներն իրենց երկարամյա գործունեության ընթացքում իրականացրել և իրականացնում են ազգանվեր հսկայական աշխատանք: Տարիներ շարունակ հայկական հոգևոր կառույցները, ավանդական կուսակցությունները, բարեգործական, կրթամշակութային, մարզական կազմակերպությունները համահայկական հարցերի լուծմանն ուղղված լայնածավալ աշխատանքներ են կատարում՝ ցուցաբերելով հետևողական և հայրենանվեր մոտեցում համազգային առաջնահերթությունների հարցում:

Համահայկական կառույցները վիթխարի դեր են կատարել Հայոց ցեղասպանության ճանաչման և դատապարտման վերաբերյալ բանաձևերի, հայտարարությունների ընդունման, ԼՂ հիմնախնդրի ներկայացման, Սփյուռքի կազմակերպման, Հայրենիք-Սփյուռք գործակցության ամրապնդման ուղղությամբ:

Համահայկական հարցերի շուրջ համախմբվելու և արդյունավետ աշխատելու հրամայականները դիպուկ կերպով է բնորոշել համահայկական ամե-

[5] **Հակոբյան Հ.**, Հայաստան-Սփյուռք գործակցության պետական քաղաքականության հիմնախնդիրները,– «Սփյուռքի կազմակերպությունների ղեկավարների և ներկայացուցիչների համահայկական համաժողով. համաժողովի նյութեր» (խմբագիրներ՝ Մխիթարյան Գ., Մկրտչյան Ն.), «Տիգրան Մեծ», Ե., 2011, էջ 53:

նախոշոր կառույցներից մեկի՝ Հայկական բարեգործական ընդհանուր միության նախագահ Պերճ Սեդրակյանը, նշելով՝ «Բոլորս կը գիտակցինք թէ՝ մեր համազգային հիմնախնդիրները կը բնորոշուին հայրենի ժողովուրդի բարօրութիւնը ապահովելու կոչուած հայրենի պետութեան հզօրացումին, Արցախի անկախութեան և անվտանգութեան ապահովումին և հայ ինքնութիւնը ամրապնդող գործօններու ստեղծումին և զօրացումին գլխաւոր հրամայականներով, հայրենիքի թէ Սփիւռքի մէջ: Այդ հրամայականներէն իւրաքանչիւրը ունի քաղաքական, ընկերային, մարդկային իրաւունքներու, տնտեսական, կրթական, տարածաշրջանային և համաշխարհայնական ամենաբարդ ենթախնդիրներ: Որպէսզի այդ բոլորը դիմագրաւելու և լուծելու պայքարը կարենանք արդիւնաւորութեամբ շարունակել, անհրաժեշտ է, որ բազմացնենք և ամրապնդենք այն հիմքերը և կառոյցները, որոնք կը նպաստեն Հայրենիք-Սփիւռք սերտակցութեան, փոխադարձ վստահութեան և աշխատանքներու համակարգումին»[6]:

Հայկական սփյուռքը հայ պահելու, աճող սերնդին ազգային արժեքներին ու արմատներին հավատարմության ոգով դաստիարակելու, քրիստոնեական հավատքը հայի մեջ պահպանելու գործում մենք պարտական ենք Հայաստանյայց Առաքելական Սուրբ եկեղեցուն, որը 1700 տարուց ավելի հավատարիմ է իր առաքելությանը, իր հոգևոր և ազգային էությամբ զբաղված է հայ ինքնության պահպանման, սփյուռքահայ համայնքների կազմակերպման ու ամրապնդման կարևորագույն գործով:

Ներկայումս Սփյուռքում գործում են 724 հայկական եկեղեցիներ, մատուռներ և վանքեր, խնամքի կարոտ են հազարավոր խոնարհված եկեղեցիներ ու կառույցներ, որոնք կազմում են հայոց պատմամշակութային ժառանգության հիմնական մասը[7]: Մեր ժառանգության այս հատվածը բոլորովին անխնամ և անպաշտպան վիճակում է հատկապես Ադրբեջանում և Թուրքիայում:

Մեծ է հայ դպրության նկատմամբ հայ ժողովրդի ակնածանքը, նույնիսկ Դեր Զորի անապատում, ցեղասպանության ու նախճիրի մեջ հայ մայրը երեխային ավազի վրա Այբ, Բեն, Գիմ էր սովորեցնում: Եվ պատահական չէ, որ Սփյուռքում ունենք մոտ 1000-ի հասնող ամենօրյա և մեկօրյա դպրոցներ ու

[6] Տե՛ս ՀԲԸՄ նախագահ Պերճ Սեդրակյանի ելույթը Սփյուռքի կազմակերպությունների ղեկավարների և ներկայացուցիչների համահայկական համաժողովում,-«Սփյուռքի կազմակերպությունների ղեկավարների և ներկայացուցիչների համահայկական համաժողով. Համաժողովի նյութեր», Ե., 2011, էջ 44-45:

[7] Թվային տվյալները ներկայացված են հայ հոգևոր կառույցների կողմից տրամադրված տեղեկությունների հիման վրա:

դասընթացներ[8], որոնք շուրջ 400 հազար մանկան մայրենիի ուսուցման սրբազան գործով են զբաղված: Ամենօրյա դպրոցները գործում են հիմնականում Մերձավոր և Միջին Արևելքի երկրներում, Վրաստանում, Աբխազիայում: Ամենօրյա դպրոցներ գործում են նաև ԱՄՆ-ում, Լատինական Ամերիկայում, Ֆրանսիայում, Հունաստանում, Կիպրոսում, Բուլղարիայում: Այդ դպրոցների թիվն անընդհատ ավելանում է: Մեկօրյա (շաբաթօրյա, կիրակնօրյա), երկօրյա դպրոցները գործում են հայկական եկեղեցիներին, համահայկական կառույցներին, հայկական ու համայնքային կազմակերպություններին կից, ինչպես նաև օտար համալսարաններում, հայագիտական ամբիոններում, կենտրոններում որպես դասարաններ, խմբեր, խմբակներ, ուր ուսուցանվում են մայրենի և հայրենագիտության դասընթացներ: Հարկ է ընդգծել, որ «մեկօրյա դպրոց» հասկացությունը պայմանական է, այն մայրենիի ուսուցման կենտրոն է, նաև հայրենիքի հետ կապող յուրօրինակ օղակ, հայ սերնդին դաստիարակելու, նրա մեջ հայրենասիրություն, հայեցիություն սերմանելու, հայակերտումի յուրօրինակ դարբնոց:

Սփյուռքում ստեղծվել և ստեղծվում են նաև հայագիտական հարուստ արժեքներ, որին նպաստում են թանգարանները, արխիվները և մի շարք համալսարաններում ու գիտական հաստատություններում գործող հայագիտական կենտրոնները: Այսօր աշխարհի տարբեր երկրներում կան այդպիսի գործող 30 թանգարաններ, մի շարք արխիվներ, 103 հայագիտական կենտրոններ (ԱՄՆ-ում՝ 29, ՌԴ-ում՝ 11, Ֆրանսիայում՝ 9, Իտալիայում՝ 9, Լիբանանում՝ 7 և այլն), որոնք հարստացնում են ոչ միայն հայագիտությունը, այլև համաշխարհային քաղաքակրթության գանձարանը:

Հայկական ստվարածավալ հանրույթի շահերի պաշտպանությանն են լծված հայ ազգային քաղաքական կուսակցությունները (ՀՅԴ, ՌԱԿ, ՍԴՀԿ) և լոբբիստական, իրազեկման կառույցները (Հայ դատի հանձնախումբ, Ամերիկայի հայկական համագումար, Ամերիկայի հայ ազգային կոմիտե և այլն), որոնք, անկախ ծրագրային զգալի տարբերություններից, համազգային խնդիրներում ունեն միասնական մոտեցում, ինչն առաջին հերթին միտված է Հայոց ցեղասպանության ճանաչմանն ու դատապարտմանը, ԼՂ հիմնահարցի արդարացի լուծմանը, հայրենիքի հզորացմանը, Սփյուռքի ամրապնդմանն ու ազգային ինքնության պահպանմանը:

---

[8] Տե՛ս ՀՀ Սփյուռքի նախարար Հ. Հակոբյանի ելույթը Համահայկական կրթական 5-րդ խորհրդաժողովի բացմանը, 14.08.2012, http://www.mindiaspora.am/am/Speaches_of_minister/2170: Տե՛ս նաև ՀՀ Սփյուռքի նախարար Հ. Հակոբյանի ելույթը «Արարատի ստորոտին» միջազգային մեդիա փորումում, 18.03.2015, http://www.min diaspora.am/am/Speaches_of_minister/3761.

Հայկական իրազեկման կառույցները հիմնականում գործում են ԱՄՆ-ում և Եվրոպայում[9]: Հայկական լոբբինգն ակտիվացել է վերջին 40 տարում, իսկ Հայաստանի անկախացումից հետո դարձել է առավել ճկուն, քանի որ առկա է համագործակցություն Հայաստանի պետական կառույցների, մասնավորապես՝ ՀՀ արտաքին գործերի նախարարության հետ:

Վերջին շրջանում նաև հայոց պետության նախաձեռնությամբ և օգնությամբ Սփյուռքում վերակազմակերպման գործընթացներ են տեղի ունենում՝ մասնավորապես համայնքների ներուժի բացահայտման և համախմբման առումով: Աչքի են ընկնում հատկապես մասնագիտական կառույցները և դրանց կազմակերպական գործընթացը: Նման կառույցները, համախմբելով հայ ճարտարապետներին, իրավաբաններին, լրագրողներին, գործարարներին, բժիշկներին, նկարիչներին, գիտնականներին և այլ մասնագիտությունների տեր մարդկանց, ծավալել են ցանցային ակտիվ գործունեություն և աշխարհին ներկայանում են նորարարություններով, միասնական ու հեռանկարային ծրագրերով: Ուշագրավ է այն հանգամանքը, որ այս կառույցները գնալով ավելանում են ըստ մասնագիտական ուղղությունների:

Իր բազմադարյա գոյության ընթացքում հայ ժողովրդի յուրօրինակ անձնագիրն է դարձել ազգային ինքնության պահպանման հենասյուներից մեկը՝ հայկական մշակույթը: Պատահական չէ, որ 405 թ. հայ գրերի ստեղծումից ի վեր աննախադեպ վերելք ապրեց հայ մշակույթը, ամրապնդվեց հայ ազգային ոգին, հայկական քաղաքակրթությունը դրվեց զարգացման և հարատևման ուղու վրա:

1512 թ. Վենետիկում տեղի ունեցավ պատմական իրադարձություն՝ Հակոբ Մեղապարտը տպագրեց առաջին հայերեն գիրքը՝ «Ուրբաթագիրքը», հայ ձեռագիր գիրն ու գրականությունը դարձան տպագիր, հայկական բազմադարյա մշակույթը լայնորեն տարածվեց աշխարհում, ի հայտ եկան հայկական գրատպության նշանավոր օջախներ Ամստերդամում, Լվովում, Լիվոռնոյում, Նոր Ջուղայում, Կ.Պոլսում, Հնդկաստանում (Շահամիրյանների կողմից հիմնված Մադրասի տպարանը), Ռուսաստանում (Նոր Նախիջևանում, Աստրախանում, Խալդարյանցի տպարանը՝ Ս.Պետերբուրգում) և վերջապես Մայր հայրենիքում՝ Հայաստանում: Հայ գրատպության անխոնջ մշակները լծվեցին հայկական և համաշխարհային հարուստ ձեռագրային հավաքածուները հավերժացնելու վեհ ու նվիրական գործին:

Ապրելով և արարելով օտար ափերում, տարբեր մշակույթների ազդեցության ներքո և քաղաքակրթական տարբեր միջավայրերում՝ հայը փորձում է կառչած մնալ իր մշակույթին՝ որպես հայության հոգու և ոգու թարգմանի: Եվ

[9] ԱՄՆ-ում կոչվում են լոբբիստական, իսկ Եվրոպայում՝ իրազեկման խմբեր:

պատահական չէ, որ այսօր 100-ից ավելի երկրների հայկական համայնքներում գործում են 638 մշակութային կենտրոններ ու միություններ, հարյուրավոր երգի, պարի համույթներ, ասմունքի խմբեր, երաժշտական, նկարչական դպրոցներ, ուսուցողական խմբակներ և այլն: Այս կառույցների, աշխարհահռչակ անհատ կատարողների, երգիչների, ռեժիսորների, դիրիժորների, նկարիչների շնորհիվ է, որ հայկական համայնքներում շարունակվում է հայ մշակութային կյանքի վերելքը: Այս ամենն օգնում է նաև, որպեսզի օտարները ծանոթանան և ճանաչեն հայկական քաղաքակրթությունը, Հայաստանը:

Հայերը մեծ ներդրում ունեն համաշխարհային քաղաքակրթության մեջ: Միայն վերջին հարյուրամյակում մեր ժողովուրդն աշխարհին տվել է բազում հռչակավոր գիտնականներ, որոնց ներդրումը համաշխարհային գիտության, համաշխարհային քաղաքակրթության զարգացման բնագավառում անուրանալի է: Անգնահատելի է հայերի ներդրումը հատկապես ֆիզիկայի, միջուկային ֆիզիկայի, քիմիայի, մաթեմատիկայի, բնագիտության, մեքենաշինության, բժշկագիտության, տիեզերագիտության, ավիաշինության, ռազմական, բարձր տեխնոլոգիաների և այլ գիտությունների զարգացման բնագավառներում:

Հայ գիտնականների բազմաթիվ հայտնագործությունները, գյուտերն ու նորարարություններն առաջ են մղել մարդկային մտքի զարգացումը: Անգնահատելի են հատկապես նրանց կողմից արված գյուտերն առաջին արևային էներգիայով աշխատող ռադիոհաղորդիչի, մագնիսական ռեզոնանսային պատկերների ախտորոշման ու լապարասկոպիկ սարքերի, նոր տարրերի հայտնաբերման և Մենդելեևի աղյուսակում լրացման, միջուկային ֆիզիկայի, ատոմային էներգետիկայի և այլ բնագավառներում: Հայի մտքի արգասիքներ են նաև ամերիկյան դոլարին հատուկ կանաչ և սև գույների հայտնագործումը, ԴՆԹ-ի ստացումը, բժշկության մեջ օրգանների «փոխպատվաստման» ուղղության հիմնումը, ռոտավիրուսի պատվաստանյութի, մեքենայի ավտոմատ փոխանցման տուփի, բենզինային պոմպի, ավտոմեքենայի ապակիների մաքրիչների, մարզական ավտոմեքենայի հիդրավլիկ պատնեշի, օդաչուների թթվածնային դիմակի, յուրահատուկ տեսակի ջրի ծորակի, համակարգչային տոմոգրաֆիայի միջոցով մարդու մարմնի պատկերը վերարտադրող սարքի, բանկոմատի, հեռահուշարարի, առաջին պլաստիկե կոնտեյներների, պլաստիկե շշերի արտադրման մեքենայի, ճկվող ձողիկների, հաշմանդամի՝ ձեռնակառավարմամբ սայլակի, մազի ֆոլիկուլի, մազերի պատվաստման մեթոդի, առաջին տեսափլեյերի և այլ կարևոր սարքերի հայտնաբերումը:

Զարմանալի զուգադիպությամբ այնպիսի կարևոր բնագավառներում, ինչպիսիք են միջուկային ֆիզիկան և էներգետիկան, ավիաշինությունը և տիեզերքի ուսումնասիրությունը, Խորհրդային Միությունում և ԱՄՆ-ում առաջնային դիրքեր են զբաղեցրել հայազգի գիտնականները: Ահա անուններ,

որոնք մնացել են համաշխարհային գիտության պատմության մեջ՝ որպես անհաս մեծություններ. միջուկային ֆիզիկայի բնագավառում՝ Սամվել Քոչարյանց[10] (ԽՍՀՄ) և Պոլ Տեր-Կարապետյան (ԱՄՆ), տիեզերանավերի նախագծման բնագավառում՝ Ալեքսանդր Քեմուրջյան (ԽՍՀՄ) և Ջոն Հայլաջյան (ԱՄՆ), ինքնաթիռաշինարարության մեջ՝ Արտեմ Միկոյան (ԽՍՀՄ) և Վահե Կուպելյան (ԱՄՆ) և այլն:

Հուզիչ և խորհրդանշական է հետևյալ դեպքը: Սառը պատերազմի տարիներին Իտալիայում անցկացվել է կիբեռնետիկային նվիրված գիտաժողով: Ծանոթության ընթրիքին իտալական կողմը խնդրել է ԽՍՀՄ և ԱՄՆ պատվիրակությունների ղեկավարներին մոռանալ երկաթե վարագույրի մասին և հանուն գիտության բաժակ բարձրացնել: Խորհրդային պատվիրակության երիտասարդ ղեկավարի՝ Սերգեյ Մերգելյանի ներկայանալուց անմիջապես հետո կայծակնային արագությամբ ոտքի է կանգնում ԱՄՆ պատվիրակության ղեկավարը, բարձրացնում բաժակը և արտաբերում իր անուն ազգանունը: Բոլորի ապշած հայացքների ներքո երկու գիտնական գրկախառնվում են և որոշ ժամանակ անշարժ մնում: Պահը հուզիչ էր, ներկաները ոչինչ չեն հասկանում: Իտալիայի կողմից նախագահը բացականչում է. «Երկաթե վարագույրը պատռվեց»: Գրկախառնված գիտնականները սրբում են թաց աչքերը, և Սերգեյ Մերգելյանը, դառնալով ներկաներին, բացականչում է. «Պարզապես երկու հայ միմյանց հանդիպեցին...»: ԱՄՆ պատվիրակության ղեկավարը Հենրի Կարապետյանն էր[11]:

Աշխարհասփյուռ հայության մտավոր ներուժի գնահատումը կարևոր նշանակություն ունի ինչպես դրա համախմբման, կազմակերպման, այնպես էլ ի շահ Հայաստանի ու հայության կիրառման համատեքստում:

Այսօր հայ գիտնականների համախմբման առաքելությունը իր վրա է վերցրել ՀՀ գիտությունների ազգային ակադեմիայի արտասահմանյան գիտնականների բաժանմունքը: Աշխարհի զարգացած շատ երկրներում տարբեր բնագավառների ճանաչված բազմաթիվ հայ գիտնականներ, մասնագետներ (հատկապես ճշգրիտ գիտությունների և բնագիտության ոլորտներում) անդամագրվում

[10] Ուշագրավ է, որ Խորհրդային Միությունում «Սոցիալիստական աշխատանքի հերոս» պարգևի գոյության ավելի քան 50 տարիների ընթացքում ընդամենը 205 մարդ են արժանացել Սոցիալիստական աշխատանքի հերոսի կրկնակի կոչման: Նրանցից միայն 57-ն են ստացել այն գիտության և տեխնիկայի բնագավառում, որոնց շարքերում են մեր երեք հայրենակիցները՝ Արտեմ Միկոյանը, Վիկտոր Համբարձումյանը և Սամվել Քոչարյանցը: (Տե՛ս Ерканян А. Самый засекреченный «К», 23.12.2015, http://novostink.ru/armenia/136709-samyy-zasekrechennyy-k.html):

[11] Հենրի Կարապետյանը ամերիկյան ատոմային ռումբ ստեղծած հայ նշանավոր գիտնականներից է, Տե՛ս Մարտիրոսյան Հ., Սերգեյ Մերգելյան կամ պատմություն՝ շատ տխուր վերջաբանով, 06.07.2016, http://www.magaghat.am/2016/07/սերգեյ-մերգել յան-կամ-պատմություն-շատ/.

են ՀՀ ԳԱԱ-ին, իրենց ներդրումը բերում հայ գիտական մտքի զարգացման գործում: Նրանք իրականացնում են համատեղ հետազոտություններ, մշակում հետազոտական նոր ծրագրեր, օգնում մասնագետների պատրաստման և վերապատրաստման աշխատանքներին, հրատարակում համատեղ աշխատություններ և կազմակերպում միջազգային գիտաժողովներ:

ՀՀ ԳԱԱ արտասահմանյան անդամների ընտրությունն այն կարևոր եղանակներից մեկն է, որով Սփյուռքի ներուժը օգտագործվում է ՀՀ կրթական ու գիտատեխնիկական ոլորտները բարեփոխելու, դրանք արդի միջազգային չափանիշներին համապատասխանեցնելու համար:

Արագ փոփոխվող աշխարհում գիտության առաջխաղացման շարժիչ են դարձել հատկապես տեղեկատվական տեխնոլոգիաների նանո և բիո ոլորտները, որոնցում ակնառու է հայ մասնագետների դերակատարությունը: ՏՏ գլոբալ ճյուղում մեծ հեղինակություն են դարձել բազմաթիվ սփյուռքահայեր, ովքեր իրենց արմատների և կատարած աշխատանքների արդյունքում հանդիսանում են «Հայկական տեխնոլոգիաների» անուղղակի գովազդողներն ամբողջ աշխարհում: Մասնավորապես Արևմուտքում ստեղծվել են բազմաթիվ ֆիրմաներ, ընկերություններ, որոնք ունեն իրենց մասնաճյուղերը, համատեղ ձեռնարկություններ նաև Հայաստանում: Այս ձեռնարկություններում մեծ ուշադրություն է դարձվում հատկապես Հայաստանում կրթական ոլորտի զարգացմանը: Արդեն լուրջ համարում ունեն «Թումո» ստեղծարար տեխնոլոգիաների կենտրոնն[12] ու «Այբ» կրթահամալիրը[13]:

Ի թիվս մի շարք այլ ոլորտների՝ հայերը զգալի ներգրավվածություն ունեն նաև առողջապահության ոլորտում և իրենց ավանդն ունեն պրակտիկ բժշկության մեջ: Նրանք կարևոր ներդրում ունեն ոչ միայն գիտության, այլև բազմաթիվ նորամուծությունների ու նոր տեխնոլոգիաների կիրառման շնորհիվ նաև վիրաբուժության մեջ: Հայ անվանի մասնագետները ներկայացնում են առանձին համալսարաններ, ինստիտուտներ, բժշկական դպրոցներ ու կենտրոններ և աշխարհի տարբեր երկրներում բարձր են պահում հայի անունն ու հեղինակությունը:

Համաշխարհային մշակույթի ներկապնակը գունատ կլիներ առանց հայերի նշանակալի ավանդի: Հայ ժողովրդի արժանավոր զավակներից շատերը հռչակ ու ճանաչում են ձեռք բերել գրականության, արվեստի, երաժշտության, կերպարվեստի, ճարտարապետության, թատրոնի և կինոյի ասպարեզներում: Նրանք դարձել են մնայուն դեմքեր, որոնց փառքը գնալով ավելանում է:

[12] Տե՛ս http://www.tumo.org/:

[13] Տե՛ս http://aybschool.am/:

Համաշխարհային մշակույթի զարգացման կիզակետում են հայտնվել գրողներ Վիլյամ Սարոյանը, Մայքլ Առլեն Կրտսերը, Փիթեր Բալաքյանը, Անրի Թրուայան (Լևոն Թորոսյան):

Երգարվեստի առաջընթացի ավանգարդներից են Շառլ Ազնավուրը, Միշել Լեգրանը, Ալեքսանդր Սպենդիարյանը, Արամ Խաչատրյանը, Տիգրան Չուխաջյանը, Առնո Բաբաջանյանը, Ալան Հովհաննեսը, Միքայել Թարիվերդիևը, Գեորգի Գարանյանը և այլք:

Կինոռեժիսուրայի ասպարեզում մնայուն դեմքեր դարձան Անրի Վերնոյը (Աշոտ Մալաքյան), Սերգեյ Փարաջանովը, Էդմոնդ Քեոսայանը, Ռուբեն Մամուլյանը, Ստիվեն Զեյլյանը, Արտավազդ Փելեշյանը և շատ ուրիշներ:

Նկարչության և հատկապես ծովանկարչության գագաթ դարձան Հովհաննես Այվազովսկին, Արշիլ Գորկին (Ոստանիկ Ադոյան), Վարդգես Սուրենյանցը, Գառզուն, Հովսեփ Փուշմանն ու այլք:

Աչքի ընկնելով բոլոր ոլորտներում՝ հայերն արժանացել են օտարերկրյա ականավոր գործիչների դրվատանքին ու բարձր գնահատականին: Նրանցից մեկն էլ հայտնի անգլիացի կովկասագետ Դեվիդ Լենգն է, ով իր «Հայերը. արարիչ ժողովուրդ» գրքում հանգամանորեն ներկայացնելով հայոց պատմությունն ու հայերի ներդրումը համաշխարհային քաղաքակրթության մեջ և անդրադառնալով անելանելի պայմաններում հայերին բնորոշ այնպիսի հատկանիշների, ինչպիսիք են համբերատարությունը, աշխատասիրությունը, հավատարմությունը հայրենի հողին, համախմբվածությունն ու կենսասիրությունը, ընդգծում է՝ «Դատելով տրամաբանորեն՝ նրանք (հայերը) վաղուց պետք է դադարեցնեին պայքարը և հնազանդվեին ճակատագրին: Սակայն հայը կրկին ու կրկին հրաժարվում է ընդունել պարտությունը և հենց դրանում է այդ համառ անհաղթելի փոքրիկ ժողովրդի բնավորությունը հասկանալու բանալին, որի ներդրումը քաղաքակրթության մեջ չափազանց մեծ է իր թվաքանակի համեմատ»[14]:

Դժվար է աշխարհում գտնել մի երկիր, որտեղ չի դրսևորվել հայի ստեղծագործ միտքն ու ոգին, որը ճարտարապետության մեջ իր արտացոլումն է գտնում մնայուն կառույցների և կոթողների տեսքով՝ հիացմունք ու զարմանք պատճառելով ոչ միայն հայերին, այլև օտարներին որպես քարե երաժշտություն, որպես հայ շինարարի ու ճարտարապետի քրտնաջան աշխատանքի արգասիք, որպես հայի ստեղծագործ մտքի հերթական թռիչք:

Հայ ճարտարապետական միտքն իր ուրույն հետքն է թողել հատկապես Պոլսում: Հայազգի ճարտարապետ Միմար Սինանի (1489–1588 թթ.) շնորհիվ միայն Թուրքիայում կառուցվել են 130 մզկիթ, 19 դամբարան, 14 մինարեթ, 8

[14] **Лэнг Д.**, 2004, 32.

կամուրջ, 31 պալատ, 55 դպրոց, 7 գրադարան, 3 հոսպիտալ, 17 քարավանատուն, 35 բաղնիք, 5 ջրանցք, աշխարհիկ ու հոգևոր այլ կառույցներ (թվով մոտ 360 կառույց):

Պալյանների շնորհիվ կառուցվել են համաշխարհային ճարտարապետության մնայուն գանձեր համարվող Դոլմաբահչեի և Բեյլերբեյի պալատները, Համիդիեի ժամացույցի աշտարակը, Բեյքոզի, Սկյուտարի Գոշուելուի Մայր թագուհու և երկու փաշաների ապարանքները, Չրաղանի պալատը և այլն:

Մեծ է Ռոստոմ Ոսկանյանի (1932–2013 թթ.) ներդրումը հատկապես Թեհրանի ժամանակակից ճարտարապետության զարգացման գործում: Իսկ իտալահայ ճարտարապետ Լևոն Կյուրեղյանի, ֆրանսաբնակ ճարտարապետներ Լևոն Նաֆիլյանի, Էդուարդ Ութուճյանի, լոնդոնաբնակ Միշել Մոսեսյանի աշխատանքները ճարտարապետական դասական գործերի են վերածվել ներկա ժամանակներում:

2010 թ. երբ Ստամբուլի ժամանակակից արվեստի թանգարանում «Ստամբուլը եվրոպական մշակույթի մայրաքաղաք» փառատոնի շրջանակներում բացվեց 19-րդ դարի վերջին և 20-րդ դարասկզբին Կ.Պոլսում ապրած և գործած 40 հայ ճարտարապետների հեղինակած 100 պատմական շենք-շինությունների լուսանկարների ցուցահանդեսը, այն մեծ արձագանք գտավ թուրք հանրության շրջանում: Թուրքական մի շարք լրատվական և տեղեկատվական միջոցներ «Ստամբուլի հայ ճարտարապետները» վերտառությամբ հոդվածներ հրապարակեցին՝ առաջին անգամ Թուրքիայում բարձրաձայն խոսելով Ստամբուլի կայացման գործում հայ ճարտարապետների կատարած էական դերի մասին, որտեղ ներկայացնելով հայ ճարտարապետների ստեղծած կառույցների ճարտարապետական հատկանիշներն ու յուրօրինակությունը՝ նշվում են. «Արևմտականացրած Ստամբուլում հայ ճարտարապետների հետքը կա: Պալատներից մինչև մարզագետիններ, հարյուր տարի առաջվանից ժառանգված հրապուրիչ շենքերի կարևոր մեկ մասը հայ ճարտարապետների շնորհքն է: ...Եթե այսօր Ստամբուլը խոշոր քաղաք է և հպարտանում է իր բազմանշանակալի անցյալով, ապա արդյո՞ք դա այդ կառույցների շնորհիվ չէ»[15]:

---

[15] Ortaylı İ., İstanbul'un Ermeni mimarları, 11.12.2010, http://www.milliyet.com.tr /istanbul-un-ermeni-mimarlari/ilber-ortayli/pazar/yazardetay/12.12.2010/1325181/default.htm; Batılaşan İstanbul'un Ermeni Mimarları' Sergisi, 08.12.2010, http://www.sondakika.com /haber-batilasan-istanbul-un-ermeni-mimarlari-sergisi-2402560/: İstanbul'un Ermeni mimarları, 09.12.2010, http://www.haber turk.com/kultur-sanat/haber/579526-istanbulun-ermeni -mimarlari; Batılılaşan İstanbul'un Ermeni Mimarları Sergisi Sanal Mimarlık Müzesi'nde, 07.02.2014, http://www.haberler.com/batililasan-istanbul-un-ermeni-mimarlari-sergisi-5641311 -haberi/.

Ուշագրավ է այն հանգամանքը, որ ավստրիացի նշանավոր պատմաբան, Վիեննայի համալսարանի արվեստի պատմության ինստիտուտի տնօրեն, արվեստագետ Յոզեֆ Ստրժիգովսկին օտարազգի առաջին գիտնականն էր, ով ի լուր գիտական աշխարհի փաստեց հայկական ճարտարապետության ինքնուրույն երևույթ լինելու, այլ երկրների ճարտարապետության վրա ազդեցության մասին: Մասնավորապես «Հայերի ճարտարապետությունը և Եվրոպան» իր երկհատորյա հայտնի աշխատության մեջ նա նշում է. «Հռոմը, Բյուզանդիան, Բաղդադը ներգրավել են իրենց աշխարհակալության ուժերն ու արվեստ են ստեղծել: Հայաստանը մնում է ինքն իրենով նախասահմանված և իր ուժն ու էության ինքնությունը վերցնում է մայր հողից, այնպես ինչպես ժամանակին առել է Հելլասը»[16]:

Եթե փորձենք գնահատել տարբեր երկրներում գործունեության ոլորտները, որոնցում առավել մեծ է հայերի տեսակարար կշիռը, ապա գործարարության ոլորտներում հայերն ամենաներգրավվածն են: Հայերի մասնակցությունը տարբեր երկրների տնտեսական կյանքին շոշափելի է: Նրանք աչքի են ընկնում բիզնեսում, կարողանում են իրենց ստեղծագործ մտքով, կազմակերպական ունակություններով ստեղծել ֆիրմաներ, ընկերություններ հատկապես առևտրի, քաղաքաշինության, ֆինանսաբանկային, գյուղատնտեսության, իսկ վերջին շրջանում՝ նաև բարձր տեխնոլոգիաների բնագավառում: Հայ գործարարների տնտեսական հնարավորություններն ակնառու են ԱՄՆ-ում, Լատինական Ամերիկայում, Եվրոպայում, Լիբանանում և հատկապես ՌԴ-ում: ՌԴ-ում աչքի են ընկնում հարյուրավոր խոշոր գործարարներ, որոնք ընդգրկված են բիզնեսի բոլոր ոլորտներում: Ուշագրավ է, որ 2015 թ. հանրահայտ «Ֆորբս» ամսագրում ընդգրկված է հինգ հայի անուն, որոնցից երեքը գործում են Ռուսաստանի Դաշնությունում[17]: Սփյուռքի հայտնի հայերից շատերն իրենց ներդրումային ու բարեգործական ծրագրերն են իրականացնում նաև ՀՀ-ում:

Հայերի տնտեսական, գիտական ու մշակութային հնարավորություններին ու ներուժին համարժեք չէ ներգրավվածությունը քաղաքականության մեջ, թեև մի շարք պետությունների խորհրդարաններում և կառավարություններում ունեն ներկայացուցիչներ: Քիչ չեն հատկապես նահանգային և

[16] Ավելի մանրամասն տե՛ս Strzygowski J., Die Baukunst der Armenier und Europa, Band I-II, Kunstverlag Anton Schroll & Co. G.M.B.H IN Wien I, 1918, 888 s.:

[17] Peterson-Withorn Ch., Forbes Billionaires: Full List Of The 500 Richest People In The World 2015, 02.03.2015, http://www.forbes.com/sites/chasewithorn/2015/03/02/for bes-billionaires-full-list-of-the-500-richest-people-in-the-world-2015/#37d8d34e16e3. Տես նաև Ghazanchyan S., Five Armenians on Forbes' 2015 World's Billionaires List, 02.03.2015, http://www.armradio.am/en /2015/03/02/five-armenians-on-forbes-2015-worlds- billionaires-list/.

տեղական մարմիններում ընտրվածները՝ շուրջ 350 հոգի, որոնք աջակցում են նաև տվյալ երկրի և Հայաստանի կապերի ամրապնդմանը:

Ակնհայտ է, որ հայերը որտեղ էլ հաստատվեն, իրենց աշխատասիրությամբ, գործնական և մարդկային բարձր հատկանիշներով անմիջապես աչքի են ընկնում, դառնում են տվյալ հասարակությունում հարգված և ընդունված անհատներ, մասնագետներ, բարերարներ, հասարակական քաղաքական գործիչներ, ստեղծում իրենց ազգային կառույցները և դառնում հիմնականում այդ երկրի օրինապաշտ քաղաքացիներն ու ձգտում հայ մնալ, ստեղծում են հայի մասին դրական պատկերացում բնակության երկրում, իսկ հայ համայնքը, որպես կանոն, աչքի է ընկնում կազմակերպվածությամբ և ազգային նկարագրով:

Հայաստանի և Արցախի որևէ պաշտոնյա գործուղումների ընթացքում գրեթե միշտ հանդիպում է ունենում հայկական համայնքի հետ: Առանձնակի հպարտություն և ուրախություն ես ապրում, երբ ՀՀ Նախագահի հանդիպումների ժամանակ տարբեր պետությունների ղեկավարներ ընդգծված հարգանքով և առանձնակի ջերմությամբ են խոսում հայ համայնքի, նրա կառույցների, տվյալ երկրի հասարակական, քաղաքական, տնտեսական, մշակութային կյանքում հայերի ծանրակշիռ ներդրման մասին:

## Բ. ՀԱՅԿԱԿԱՆ ՍՓՅՈՒՌՔԻ ՆԵՐԿԱ ՀԻՄՆԱԽՆԴԻՐՆԵՐԸ

Համաշխարհայնացման գործընթացների, աշխարհաքաղաքական փոփոխությունների, ներսփյուռքյան տեղաշարժերի հետևանքով Հայկական սփյուռքը վերափոխությունների է ենթարկվում՝ ձեռք բերելով նոր հատկանիշներ, միևնույն ժամանակ տվյալ միջավայրում պահպանելով հիմնական առանձնահատկությունները:

Վերջին շրջանում ընդունված է Հայկական սփյուռքը կոչել սփյուռքներ, որը, մեր կարծիքով, շփոթ կարող է առաջացնել այսօրվա առանց այդ էլ բարդ իրադրության պայմաններում: Ընդհանրական անվանմամբ Հայկական սփյուռքն ունի իր կառուցվածքը համայնքների ձևով, որոնք էլ գործում են համապատասխան երկրում, տարածաշրջանում և կրում համապատասխան անվանումները՝ Ռուսաստանի հայկական համայնք, ԱՄՆ-ի հայկական համայնք և այլն: Կարծում ենք՝ Հայկական սփյուռքի մասերը պետք է տարբերակել այս անվանումներով: Մյուս կողմից՝ հարկ է ձերբազատվել «գաղութ» բառից, քանի որ սփյուռքյան համայնքների հիմնական մասում արդեն չորրորդ, հինգերորդ սերունդն է ծնվում, և նրանց գաղթական կոչելը այդքան էլ ճիշտ չէ:

Օժտված լինելով հավաքական ինքնագիտակցությամբ և կապված լինելով Մայր հայրենիքի հետ՝ Սփյուռքը միաժամանակ ունի հայկական ինքնու-

թյան պահպանման, սերունդներին հայ պահելու լուրջ խնդիր, որը նաև հայոց պետության գերխնդիրներից է: Հայ ինքնության պահպանումն անհրաժեշտ է միասնականության, տեսակի պահպանման համար: Այսօրվա Սփյուռքը, անկախ իր սփռվածության աստիճանից, դարձել է ցանցային, որի համար փրկության խարիսխ է դառնում Հայաստանը, իսկ համախմբման առանցք են կազմում Հայաստանի զորացումը և ԼՂ հիմնախնդրի կարգավորումը, Ցեղասպանության ճանաչման, դատապարտման և հետևանքների վերացման հիմնահարցերը:

Անկախ բնակության երկրից՝ համայնքում իրավիճակի փոփոխությունը ազդում է ամբողջ Սփյուռքի վրա. ինչպե՞ս օգնել, ո՞ւր տեղափոխել, ինչպե՞ս ինտեգրել, ինչպե՞ս լուծել աշխատանքի, կրթության հարցերը և այլն: Այսպիսով՝ Համաշխարհայնացման գործընթացների արդի փուլում հայության հիմնախնդիրները չեն պակասել: Պատերազմների, հակամարտությունների, բնական աղետների հետևանքով ակտիվանում են նաև հայության տեղաշարժերը Արևելքից Արևմուտք, որոնք հանգեցնում են Սփյուռքի կառուցվածքային փոփոխություններին ու վերաձևավորումներին:

Մերձավոր Արևելքում իրավիճակի սրման հետևանքով կազմալուծման եզրին են հայտնվել տարածաշրջանի հայկական երբեմնի ստվար համայնքները, բազմահազար մեր հայրենակիցներ դարձել են փախստական: Թեև 20 հազար հայ Սիրիայից տեղափոխվեց Հայաստան, և հայոց պետությունը ստեղծեց հնարավոր բոլոր պայմանները նրանց կրթության, աշխատանքի, սոցիալական խնդիրների լուծման համար[18], այնուամենայնիվ, սիրիական համայնքի կեսը նախընտրեց հաստատվել այլ երկրներում, որտեղ ծագել են բազում հիմնահարցեր՝ փաստաթղթերի, կացության, աշխատանքի և այլնի հետ կապված:

Ակնհայտ է, որ հայերը համախմբվում են համահայկական խնդիրների շուրջ և հատկապես ցավի ու վտանգների դեպքում դառնում միասնական: Սակայն հարկ է արձանագրել, որ դասական Սփյուռքի և Հայաստանից մեկնածների միջև հիմնականում չկա սերտ համագործակցություն: Հայաստանցիների մի ստվար հատվածը ներգրավված չէ համայնքային կյանքում: Թեև Սփյուռքի նախարարությունն իրականացնում է մի շարք ձեռնարկներ համայնքային կառույցների հետ, այնուամենայնիվ մերձեցման խնդիրները մնում են օրակարգային: Չկա տարբերակված մոտեցում «հաջողակ» և «խնցելի» խմբերի հետ աշխատանքներում:

[18] ՀՀ Նախագահ Սերժ Սարգսյանի ելույթը ԱՄՆ արևելյան ափի հայ համայնքի ներկայացուցիչների հետ հանդիպմանը, 30.03.2016, http://www.president.am/hy/statements-and-messages /item/2016/03/30/President-Serzh-Sargsyan-meeting-with-Armenian-community-in-USA-speech/:

Շատ տեղերում ծառացած է համայնքի ինքնակազմակերպման խնդիրը: Դեռևս քիչ չեն տարածքները, որտեղ հայերը վատ կամ գրեթե վատ են կազմակերպված (Մեքսիկա, Աֆրիկա, Հարավային Ամերիկայի մի շարք երկրներ, ՌԴ-ի որոշ տարածքներ): Անկախ բազմազանությունից, մշակութային և լեզվական տարբերություններից՝ հայերը, այնուամենայնիվ, ցանկություն ունեն համախմբվելու՝ համայնքային, մշակութային կյանք կազմակերպելու ակնկալիքով:

Հզոր են ու կազմակերպված այն համայնքները, որոնցում գործում է համահայկական կազմակերպությունների ցանցը՝ իր կենտրոնական մարմիններով ու մասնաճյուղերով: Բայց պետք է արձանագրել նաև, որ համայնքի 70-80 %-ը չի մասնակցում համայնքային միջոցառումներին, և գնալով թուլանում են հայության ու հայկականության հետ կապերը:

Հայ մնալն աշխարհում գերխնդիր է դարձել, ուստի մեր միասնության հիմքը պետք է լինի հայ ինքնության պահպանումը: Օտար պետություններում հայ ինքնության և լեզվի պահպանման հիմնահարցերը՝ լեզուն օգտագործելու համար հավաքական միջավայրի բացակայությունը (գնալով մեծանում է մայրենի լեզուն չիմացողների հատվածը), ուծացման վտանգը, տարածաշրջանային առանձնահատկությունների հետևանքով Սփյուռքի հայկական դպրոցների խնդիրները պահանջում են նոր, առավել նպատակային ու համակարգված գործողություններ:

Համաշխարհայնացման հետևանքով ծագող նոր իրողությունները, հայերի սփռվածությունը հանգեցնում են նրան, որ զուտ հայկական ընտանիք կազմելու հարցը դառնում է հիմնախնդիր, ավելանում է խառնամուսնությունների թիվը (որոշ համայնքներում կազմում է 50–90 %), ավանդական հայ ընտանիքի սովորույթներն ու ավանդույթները մոռացվում են, թուլանում: Նման ընտանիքներում ծնված երեխաների ինքնության հարցերը հաճախ հարցականի տակ են դրվում:

Հայկական ընտանիքի ամրությունը, գերդաստանի հետ կապվածությունը դեռևս իշխում է հայկական իրականության մեջ, և հարազատները գերադասում են նույն համայնքում, նույն քաղաքում ապրել համախումբ կերպով: Գերդաստանային մտայնությունը շարունակում է հոգեհարազատ մնալ, արդիական է մնում հայկական ընտանիքի վերամիավորման գործոնը, ինչով էլ կարելի է նաև բացատրել հայության անընդմեջ տեղաշարժերը:

Հայերը ստեղծել են պատմամշակութային բազմաթիվ կոթողներ, ճարտարապետական կառույցներ, պուրակներ, շենքեր, շինություններ, եկեղեցիներ: Սակայն մի շարք երկրներում սպառնալիքի տակ է հայտնվել հայկական պատմամշակութային հարուստ ժառանգությունը: Դա ակնհայտ դրսևորումներ է ստացել հատկապես հարևան Ադրբեջանում և Թուրքիայում: Վտանգ-

ված է նաև մերձավորարևելյան տարածաշրջանի հայկական պատմամշակութային ժառանգությունը:

Սուդանում, Եթովպիայում, Եգիպտոսում, Հնդկաստանում, Վենետիկում, Վիեննայում և Փարիզում և այլուր կուտակված է մշակութային լուրջ ժառանգություն, կան հայկական հողատարածքներ, շենքեր և շինություններ, որոնց հետագա գործածությունը վտանգված է:

Հայ ժողովուրդը շարունակում է Հայոց ցեղասպանության դառնությունն ու ցավը 100 տարի անց էլ կրել իր մեջ և շարունակել պայքարն այդ հիմնախնդրի լուծման համար՝ հաջորդ սերունդներին փոխանցելով պատմական հիշողությունը: Եվ այդ հիշողությունն իր մեջ կրող չորրորդ սերունդը դարձել է ավելի պահանջատեր, ավելի գրագետ, մրցունակ և շարունակում է հայության իրավունքների համար պայքարը:

21-րդ դարում աշխարհի վերափոխումների ու աշխարհաքաղաքական փոփոխությունների պայմաններում առաջնային է դարձել տեղեկատվական անվտանգության խնդիրը: Դա առավել կարևոր է հայկական իրականության համար, քանի որ Թուրքիայի և Ադրբեջանի կողմից հակահայկական քարոզչությունն ու ապատեղեկատվության տարածումը դարձել են պետական քաղաքականություն, ամենուր և ամեն կերպ աղճատվում են պատմական փաստերը, կեղծվում ու խեղաթյուրվում է պատմությունը, քարոզվում հայատյացություն ու մարդատյացություն ընդհանրապես: Սա լուրջ հիմնահարց է դարձել ողջ հայության համար:

Ներկա իրավիճակի առանձնահատկություններից է նաև այն, որ Հայաստանին և Սփյուռքին նետված առանձին մարտահրավերներից զատ, առկա են նաև համազգային մարտահրավերներ, որոնց հաղթահարումը ջանքերի միատեղման նոր որակ է պահանջում: Համազգային այդ մարտահրավերներից են Լեռնային Ղարաբաղի չկարգավորված հիմնախնդիրը, 23 տարի շարունակ երկու հարևանների կողմից Հայաստանի շարունակվող շրջափակումը, ինչը տնտեսական լուրջ հարված է հասցնում երկրին: Սփյուռքը խիստ զգայուն է Հայաստանում առկա խնդիրների, արտագաղթի մակարդակի, բազում այլ հիմնահարցերի նկատմամբ:

Հայկական սփյուռքը ապակենտրոնացված է, համախմբված չէ մեկ միասնական համահայկական կառույցի ներքո, ինչը բնորոշ է մի շարք խոշոր սփյուռքների: Այս հարցն անընդհատ քննարկվում է, և փորձ է արվում գտնել համախմբման կառուցակարգեր:

Պատահական չէր, որ Հայոց ցեղասպանության 100-րդ տարելիցի միջոցառումները համակարգող պետական հանձնաժողովը 2015 թ. սեպտեմբերի 26-ի նիստում որոշում ընդունեց Համահայկական խորհուրդ ձևավորելու մա-

սին[19] և ստեղծեց կազմակերպական հանձնախումբ՝ կազմում ընդգրկելով պետական, հոգևոր, համահայկական կառույցների ներկայացուցիչներ:

Պետական հանձնաժողովը միաժամանակ արձանագրեց, որ

– Խորհուրդը կարող է ունենալ տարածաշրջանային և թեմատիկ հանձնախմբեր.

– Խորհրդի նիստերը գումարվելու են առնվազն տարին մեկ անգամ Երևանում և ունենալու են նիստերի միասնական մշտական օրակարգ:

Սփյուռքի վերոհիշյալ հիմնախնդիրների լուծմանը միտված քայլերն անհնար է պատկերացնել առանց Հայրենիք-Սփյուռք սերտ գործակցության: Հայաստանի Հանրապետությունն ու Սփյուռքը միայն համատեղ կարող են հաղթահարել համայն հայության առջև ծառացած հիմնախնդիրները և դիմակայել արդի դարաշրջանի մարտահրավերներին: Մեր ուժը, մեր նպատակների իրականացման միակ բանալին մեր համախմբումն է, ազգային միասնությունը, մեր հայաստանակենտրոն գործունեությունը: Այս համահայկական տեսլականին կարող են իրենց նպաստը բերել նաև Սփյուռքում ստեղծվող համապատասխան համակարգող մարմիններն ու կառույցները: Նման համակարգող մարմիններ ունեն իտալական, հունական, հրեական, հնդկական, չինական համայնքները[20]:

Ուսումնասիրելով Հայկական սփյուռքի գործունեությունը, կապերն ու փոխհարաբերությունները ՀՀ Սփյուռքի նախարարության և դիվանագիտական կառույցների, մյուս գերատեսչությունների հետ՝ կարող ենք արձանագրել, որ անկախության տարիներին դրանք քայլ առ քայլ սերտացել և հզորացել են, բարելավվել են կապերը տարբեր կառույցների և տարբեր մարմինների ու կենտրոնների միջև, նկատվել է գործակցության աճ, իրականացված ծրագրերում առկա է փոխհամագործակցություն, որը հատկապես ակնհայտ է համահայկական խնդիրների լուծմանն ուղղված աշխատանքներում:

Հայրենիքի հետ կապերը գնալով ուժեղանում են, համահայկական ցանցային կառույցները կարողանում են համազգային առաջնահերթ խնդիրների

---

[19] Ցեղասպանության 100-րդ տարելիցի միջոցառումները համակարգող հանձնաժողովը որոշում է ընդունել Համահայկական խորհուրդ ձևավորելու մասին, 26.09.2015, http://armenian genocide100.org/armenia-decides-to-form-panarmenian-council/:

[20] Իտալիայում օրինակ գործում է Արտերկրում բնակվող իտալացիների գլխավոր խորհուրդը (the General Council of Italians Abroad), Արտասահմանյան իտալացիների ներկայացուցչական մարմինը՝ Արտասահմանյան իտալացիների կոմիտեն (the Committee of Italians Abroad), Հունաստանում՝ Արտերկրի հույների (համաշխարհային) խորհուրդը (ԱՀԽ, the World Council of Hellenes Abroad), հրեաների շրջանում՝ Համաշխարհային հրեական կոնգրեսը (the World Jewish Congress) և այլն (Տե՛ս http://www.ambtashkent.esteri.it/ambasciata_tashkent/ru/informazioni_e_servizi/servizi_consolari/servizi_elettorali/normativa_comites_cgie; http://en.sae.gr/; http://www.worldjewish congress.org/en):

շուրջ համախմբել ազգը: Հայկական սփյուռքը դարձել է անկախ Հայաստանի Հանրապետության շարունակությունն ու մրցակցային առավելությունը, նրա անվտանգության բաղադրիչը: Սփյուռքը դարձել է հայկական մերօրյա իրականության անբաժանելի մասը:

## ARTICLES
## ՀՈԴՎԱԾՆԵՐ

**VAHAN TER-GHEVONDIAN**
*PhD in History*
*Mashtots Institute of Ancient Manuscripts – Matenadaran*
vterghevondian@gmail.com

# THE "TRIPOLI-ICONIA-ALEPPO" ANTICILICIAN ALLIANCE DURING THE "ANTIOCHIAN" WAR (1201–1216)

**Key words:** *Cilicia, Armenian Kingdom, Iconia, Tripoli, Aleppo, Antioch, Ayyubid, Levon I, Salah al Din.*

After the proclamation of the kingdom of Cilician Armenia (1198) Levon I (1198–1219) invested the main diplomatic and military potential of the country to solve the issue of Antiochian succession[1]. For this purpose, the secular and religious powers of Cilicia initiated an active correspondence with the Holy See of Rome seeking to secure a pro-Armenian attitude of the leader of the Catholic Church who had a significant amount of influence over European countries.

The claims of the Cilician Armenia on Antioch contradicted not only the interests of the County of Tripoli but those of Sultanates of Iconium and Aleppo. Obviously, by taking Antioch the Cilician Armenia would significantly bolster its posi-

[1] According to an agreement signed between Levon I and Prince Bohemund III of Antioch in 1194 Levon's niece Alice married Bohemund's son Raymond on condition that their son will inherit the throne of Antioch (see about this treaty in **Ter-Petrosyan L.**, 2007, Vol. II, 169–179. According to Jean Richard the agreement of 1194 became an important prerequisite for the proclamation of the kingdom (see **Richard J.,** 2000, 169, **Ter-Petrosyan L.**, Vol. II, 179). The child born as a result of that marriage was Ruben-Raymond who Levon I soon took under his guardianship. However, disputes arose for the succession of the throne on the part of Raymond's uncle Count Bohemund IV of Tripoli who also had claims for the throne of Antioch.

tions in the Mediterranean basin which would be a serious threat for both the County of Tripoli and the Sultanates of Iconium and Aleppo. The latter were deeply worried by the strengthening of the newly proclaimed Armenian kingdom and to prevent this a Tripoli-Iconia-Aleppo anticilician alliance was formed.

Surrounded by hostile countries the Cilician Armenia thus could expect assistance only from the Pope of Rome since it had no other allies. Quite aware of the fact that the Pope's major problem was to liberate Jerusalem from Moslems, Levon I hurried to inform him about the formation of the Tripoli-Iconia-Aleppo anticilician alliance adding that while that alliance was against his kingdom it considerably hindered the liberation of the Lord's cemetery from the non-believers and absolutely contradicted the crusaders' noble idea of Christian brotherhood.

In a letter dated October 1, 1201, Levon I informs the Pope that his intelligence regarding the treaty signed by the Sultan of Iconia and the County of Aleppo-Tripoli is absolutely accurate and reliable as he had sent his men there who frequently kept him updated: "…we sent our spies, who are disguised untill today and whence this news comes and which is brought to the feet of our power with humbleness and respect, the discovered matter was accurately passed on to us"[2] reads the letter. Of course, Levon's letters were not the only source of information for the Pope on the events in the Mediterranean countries. It means that the information of the King of Cilicia should have been possibly accurate in depicting the reality.

To accelerate the aid Levon informed the Pope that it was necessary to take advantage of the internal wars between Moslem countries and to solve the problem of the liberation of Jerusalem, otherwise, according to the Cilician king, it would be impossible to defeat them. "There is a serious feud among barbarian nations…And if you could send the aid before they restored peace, the Christians would have some rest, otherwise, before the aid arrives, the agreement will be restored among them, and there will be no one to withstand their force, the rest of Christians will hardly be able to resist them or rather will never be able to resist them"[3].

Levon I, apparently meant, the dynastic struggle among the Ayyubids (1194–1201), during which Salah al Din's (1174–1193) brother al-Malik al-Adil (1200–1218) taking advantage of the disagreement between his nephews, after years of struggle, unified Egypt, Southern Assyria, Palestine, the Upper Mesopotamia and the adjacent regions in one state.

The dynastic feud ended in 1201 when al-Adil took Damascus which established the supreme dominance of his family in the Ayyubid dynasty[4]. Only al-Malik

---

[2] Acta Innocentii PP. III (1198–1216), Fontes series III, vol. II, 1944, 560.
[3] Ibid.
[4] Cf. **Burns R.,** 2005, 180.

al-Zahir, the son of Salah al Din accepted the superiority of his uncle and kept his power in Northern Assyria with Aleppo as its center[5].

It is not that before the arrival of the anticipated aid Levon I had not undertaken any steps to fight Moslems. In the same letter, he informs quite accurately that he had dispatched troops to defend the territories of Templars in Cilicia from «barbarians'» assaults. However, he hurries to mention that his applications sent twice to the crusader knights remained unanswered. "We sent it for the second time asking them for the sake of God to return to our kingdom…"[6]

King Levon informs the Pope that in spite of many refusals he still exhorted the Templars to fight Moslems together but he was already convinced that "they do not like to fight Moslems together with us"[7]. Nevertheless, the king expresses his willingness to allow the members of that knight order to return to the Kingdom of Cilician Armenia.

The assurances by Levon I that the Cilician Armenia was left alone against enemies (both crusaders and Moslem) were true. The Ayyubid Sultan of Aleppo attacked the Armenian kingdom in 1201, which forced Levon I to leave Antioch and to hurry to his kingdom[8].

The rulers of Cilicia realized very well that without implementing the changes put forward by the Roman Catholic Church (at that stage of relations it referred to rituals) it was hard to expect any real aid.

For that reason, in 1202 Catholicos Gregor VI Apirat (1194–1203) applied to the Pope with a letter assuring that ritual changes had taken place[9]. It referred to the three ritual changes required by the Pope in exchange for the coronation of Levon, which were mentioned to some extent by Kirakos of Gandzak[10]. Nevertheless, the Armenian Catholicos did not forget to remind of the need to send aid to Levon I[11]. By the order of the king another letter with almost the same content was sent to the Pope from the Archbishop of Sis – Hovhannes of Sis[12].

In 1202 the formation of a military alliance between Antioch-Tripoli County and Sultanates of Iconia and Aleppo became clearly visible which made Levon the Magnificent to activate his efforts even more to thwart this anticilician cooperation.

[5] Cf. **Տեր-Ղևոնդյան Վ.,** 1994, 114:
[6] Acta Innocentii PP. III (1198–1216), 561.
[7] Ibid.
[8] Cf. **Cahen Cl.,** 1940, 600–601:
[9] Acta Innocentii PP. III (1198–1216), 567:
[10] **Կիրակոս Գանձակեցի,** 1961, 156–157:
[11] Acta Innocentii PP. III (1198–1216), 566:
[12] Ibid., 568–569.

However, as the events unfolded it became clear that the Armenian king had not relied only on the Pope's aid.

Levon's army gained impressive victories against the Sultanate of Aleppo[13]. However, the Sultanate of Iconia continued to be a serious threat for the Cilician Armenia.

The victories of Levon I consolidated the alliance between Antioch-Tripoli, Sultanates of Iconia and Aleppo which, as it is clearly stated in a letter dated to 1205 from the Armenian king to the Pope, was joined by the knights of Templar order. "They (the Templars – V. T.-Gh.) moreover, together with the Count of Tripoli and Antiochians allied with the sly Sultan of Aleppo[14]" reads the letter. According to Levon I that was the reason he took the territories of the Templars in the Cilician Armenia. The king of Cilicia reminds the Pope again that the alliance of the Templars with the County of Antioch-Tripoli is absolutely contradicting to the idea of crusades, since "they shed the blood of Christians – neglecting the religious unity"[15] instead of that of the enemies.

Although the correspondence of the parties is immersed with the ideas of Christian brotherhood, neither of the parties was guided by that. In the Pope's reply letters, it is obvious that the Pontiff of Rome has left unanswered the assurances of Levon I about the formation of an anticilician, and according to the king to Cilicia – an anti-Christian alliance between the Crusaders of the Near East and the local Moslem countries. Moreover, the Pope tried his best to solve the disagreement between Cilicia and the Templars in favor of the latter – exhorting the Armenian king to return the lands and fortune confiscated from them.

It is noteworthy that Levon's attitude notably changed after the proclamation of the kingdom and especially when the problem of heir of Antioch exacerbated. The same was true about the position toward the superiority of the Roman church and acceptance of the creed of that church since "assurances" given to Levon were left on paper. This is grounded well by the record of a Latin cleric Brocardus which has been preserved in the subchapter of his book entitled "Why we should beware of Armenians".

Considering the importance of his data, here we refer to the full passage: "Since Armenians in this Lesser Armenia (means the Cilician Armenia – V. T.-Gh.) which is the subject of the current speech, were granted the crown and the name of king

---

[13] See about the three-year war between the Cilician Armenia and Sultanate of Aleppo between 1203–1206 in foreign sources about Armenia and Armenians, 11, Arab sources, II, Ibn al-Asir, 1981, 285–286, Histoire d'Alep par Kamal ad-Din Ibn al-Adim, t. III, 1968, 157–158. See also **Ter-Ghevondyan V.,** 116–122.

[14] Acta Innocentii PP. III (1198–1216), 584.

[15] See the same place.

**Дьяконов И.**, Пути истории (От древнейшего человека до наших дней), Москва, 2007.

**Загурский Л. П.**, Этнологическая классификация кавказских народов (Извлечено из рукописного труда). Приложение к Кавказскому календарю на 1888 г.

**Зареванд**, Турция и Пантуранизм, Париж, 1930;

**Османов Ю. Б.**, Просветитель Востока Исмаил Гаспринский, Симферополь, 2014;

Первая всеобщая перепись населения Российской империи 1897 г., Издание Центрального статистического комитета министерства внутренних дел, выпуск 1, СПб., 1897.

Первая всеобщая перепись населения Российской империи 1897 г., Наличное население обоего пола по уездам и городам, с указанием преобладающих вероисповеданий и главнейших сословий, выпуск 6, 1905 г.

Первая всеобщая перепись населения Российской империи 1897 г., Наличное население обоего пола по уездам, с указанием числа лиц преобладающих родных языков, вып. 7, 1905 г.

Распределение народностей населяющих Кавказ, по губерниям и областям Кавказа, Кавказский календарь на 1887 г.

**Реза Э.-о.,** Азербайджан и Арран(Атурпатакан и Кавказская Албания), Москва, 2012

**Услар П. К.**, Этнография Кавказа. Языкознание, Том VI. Кюринский язык, Тифлис, 1896.

Число церквей и прихожан православных, армяно-григорианских и магометанских, по сведениям 1884 г., Кавказский календарь на 1887 г.

**Шахтахтинский М.**, Как называть Закавказских мусульман, Каспий, N 93, 1891.

**Шахтахтинский М.**, Маленькая Азербайджанская Азбука, фонетическое восточное письмо, – Seçilmiş əsərləri, Bakı, 2006, s. 385.

**Шахтахтинский М.**, Пояснительная записка о фонетической восточной азбуке, Тифлис, 1902, с. 2;

**Աճառյան Հ.**, Լիակատար քերականություն Հայոց լեզվի, համեմատությամբ 562 լեզուների, հտ. 1, Երևան, 1952:

**Գալստյան Վ.**, Արեւելյան Այսրկովկասի թյուրքական ցեղերը ԺԹ դարում, – «Գարդմանի եւ Շիրվանի հայության պատմա-մշակութային ավանդները (պատմություն եւ արդիականություն)». Հանրապետական գիտաժողով (ապրիլի 29-30, 2016 թ.). Զեկուցումներ եւ զեկուցումների դրույթներ, Եր., 2016, էջ 33-59:

**Խաչատյան Հ.**, «Ադրբեջանցիները», «կովկասալեզուները» և «իրանալեզուները». Ինքնության զարգացումներն Ադրբեջանում, Հանդես Ամսօրեայ, Վիեննա-Երեւան, 2012, էջ 274:

**Ստեփանյան Գ.,** Բաքվի նահանգի հայությունը XIX դարի երկրորդ կեսին (պատմաժողովրդագրական ուսումնասիրություն), Երևան 2010:

**ՎԱՐԴԱՆ ԳԱԼՍՏՅԱՆ**
*ՀՀ ԳԱԱ Արևելագիտության ինստիտուտ*
vardang19@gmail.com

# ԱՐԵՎԵԼՅԱՆ ԱՅՍՐԿՈՎԿԱՍԻ ՄՈՒՍՈՒԼՄԱՆ ԲՆԱԿՉՈՒԹՅՈՒՆԸ 19-ՐԴ ԴԱՐԻ ԵՐԿՐՈՐԴ ԿԵՍԻՆ (ԺՈՂՈՎՐԴԱԳՐԱԿԱՆ ՎԵՐԼՈՒԾՈՒԹՅՈՒՆ)

## ԱՄՓՈՓՈՒՄ

Արևելյան Այսրկովկասի պատմության այս ժամանակաշրջանն ընտրվել է մի քանի պատճառներով: 19-րդ դարի երկրորդ կեսին այդ երկրամասի մահմեդական բնակչության մեծամասնությունը կազմող թյուրքական ծագմամբ, աստիճանաբար անհետացող ցեղային էթնիկ ինքնագիտակցությամբ եւ ինքնանուններով զանգվածի կյանքում տեղի ունեցան կարևոր իրադարձություններ: Ռուսական կայսրության կազմում գտնվող այս տարածքում սկսեց ձևավորվել թյուրքալեզու գրավոր մշակույթ: Սկսեց տպագրվել արաբատառ, սակայն թյուրքալեզու գրականությունը:

Արևելյան Այսրկովկասի այս ժամանակաշրջանում սկզբնավորված թյուրքալեզու մամուլում ի հայտ են գալիս հրապարակախոսական հոդվածներ, խոսուն մտորումներ նաև տարածաշրջանի թյուրքախոս բնակչության էթնիկ պատկանելության վերաբերյալ: Այդպիսին է 1891 թվականին «Կասպիյ» թերթում Մուհամեդ աղա Շահթախտինսկու հոդվածը, որում հրապարակախոս, պատմաբան և լեզվաբան հեղինակն առաջարկում է Այսրկովկասի մահմեդականներին անվանել ոչ թե պարզապես մահմեդական (մուսուլման), թաթար, թուրք կամ պարսիկ, այլ ադրբեջանցի, իսկ նրանց լեզուն ճիշտ է համարում կոչել ադրբեջաներեն: Այս դեպքում խոսք է գնում առանձին մտավորականի եզրակացությունների մասին, բայց դրանց հիմքում, անշուշտ, դերակատարություն ունեին 19-րդ դ. երկրորդ կեսին տեղի ունեցած փոփոխությունները՝ իրանական մնացյալ միջավայրից տարածաշրջանի կտրվելուց հետո Ռուսական կայսրության կազմում իսլամական և ռուսական մշակույթի ազդեցությամբ թյուրքալեզու գրական լեզվի, գրավոր մշակույթի ձևավորումը, թյուրքական ծագմամբ նոր ձևա-

վորվող մտավորականության շրջանում այն գիտակցության սաղմնավորումը, որ իրենք լեզվով և ծագմամբ տարբեր են Այսրկովկասի մյուս՝ ավելի փոքրաքանակ իսլամադավան ժողովուրդներից:

Ելնելով վերոնշյալ հանգամանքներից՝ հոդվածում փորձ է արվել տալ 19-րդ դարի երկրորդ կեսին Բաքվի, Ելիզավետպոլի նահանգները (գուբերնիաները), Զաքաթալայի օկրուգը ընդգրկող Արևելյան Այսրկովկասի բնակչության էթնիկ, դավանական ու լեզվական պատկերը:

19-րդ դարի երկրորդ կեսին այս տարածքի բնակչության էթնիկական և կրոնական կազմի մասին տեղեկություններ են հայտնում այդ ժամանակաշրջանում Կովկասում և ընդհանրապես ողջ Ռուսական կայսրությունում անցկացված մարդահամարները:

19-րդ դարի երկրորդ կեսին արված մարդահամամարները ցույց են տալիս Արևելյան Այսրկովկասի էթնիկական բազմազանությունը: Միաժամանակ Ռուսական կայսրությունը տարածաշրջանում իր տիրապետության հաստատումից ի վեր առաջին անգամ պաշտոնական վիճակագրական տվյալներով ամրագրում է Արևելյան Այսրկովկասում թյուրքախոս բնակչության մեծամասնություն լինելը, որը արդյունք էր թյուրքական տարրի անդադար հոսքի ու բնիկ ժողովուրդների երկարատև ուծացման (ասիմիլյացիայի): Մարդահամարների հրապարակված տվյալները և դրանցում առանց ցեղային պատկանելության՝ անխտիր բոլոր թյուրքախոսներին թաթար բնորոշմամբ բնութագրումը անշուշտ նպաստել է երկրամասի թյուրքական ծագմամբ բնակչության և առաջին հերթին նոր ձևավորվող մտավորականության շրջանում իրենց հավաքականության ու մեծամասնություն լինելու գիտակցմանը: Ավելին, տարբեր տարիների մարդահամարներում թյուրքական ծագմամբ բնակչության համար կիրառվել են թաթարներ, ադերբեջանական թաթարներ, իսկ լեզվի համար նույնիսկ ադերբեջաներեն եզրույթները: Այս փաստն էլ մեր կարծիքով արհեստականորեն խթանել է թյուրքախոսների շրջանում հավաքական ինքնանվանման փնտրտուքները, ավելին աստիճանաբար հող է նախապատրաստել հետագայում՝ արդեն 20-րդ դարում, երկրամասի համար «Ադրբեջան» եզրույթի, իսկ բնակիչների համար «ադրբեջանցիներ» արհեստական էթնանվանման արմատավորման համար:

**ВАРДАН ГАЛСТЯН**
*Институт востоковедения НАН РА*
vardang19@gmail.com

# МУСУЛЬМАНСКОЕ НАСЕЛЕНИЕ ВОСТОЧНОГО ЗАКАВКАЗЬЯ ВО ВТОРОЙ ПОЛОВИНЕ 19-ГО ВЕКА (ДЕМОГРАФИЧЕСКИЙ АНАЛИЗ)

## РЕЗЮМЕ

Этот период истории Восточного Закавказья выбран по нескольким причинам. Во второй половине 19-го века в жизни тюркского населения, составляющее большинство мусульманского населения этого региона, с постепенно исчезающей племенной этнической идентичностью и этнонимами произошли важные перемены. Прежде всего, на данной территории, входившей в состав Российской империи, начала формироваться тюркоязычная письменная культура. Тюркоязычная, но основанная на арабском алфавите литература начала печататься.

Одновременно надо подчеркнуть, что в формирующейся в этот период тюркоязычной прессе Восточного Закавказья, появляются публицистические статьи, интересные размышления об этнической принадлежности тюрко-язычного населения региона. Такова статья Магомед ага Шахтахтинского, опубликованная в 1891 г. в газете «Каспий», где автор – публицист, историк и лингвист предлагает называть Закавказских мусульман не просто мусульманами, татарами, турками или персиянами, а азербайджанцами, а их язык – азербайджанским. В этом случае речь идёт о размышлениях отдельного интеллигента, но в их формировании, несомненно, сыграли роль изменения, произошедшие во второй половине 19-го века. Эти изменения включали в себя отделение региона от остального иранского пространства, и формирование тюркоязычного литературного языка и письменной культуры и зарождение в среде новой тюркоязычной интеллигенции сознания, что они языком и происхождением отличаются от других, более малочисленных мусульманских народов Закавказья.

Исходя из вышеперечисленного, в этой научной статье сделана попытка дать этническую, конфессиональную и языковую картину мусульманского населения Восточного Закавказья второй половины 19-го века. Тогда этот регион включал в себя Бакинскую и Елизаветпольскую губернии, Закатальский округ.

В 19-ом веке данные об этнической и конфессиональной картине населения этого региона дают переписи населения, проведённые в этот период на Кавказе и во всей Российской империи.

Переписи второй половины 19-го века показывают этническое многообразие Восточного Закавказья. Одновременно Российская империя, впервые со времён установления своего владычества, статистическими данными констатирует большинство тюрко-язычного населения в Восточном Закавказье. Это большинство было обусловлено непрерывным наплывом тюркского элемента и долговременной ассимиляцией туземных народов. В данных переписей все тюркоязычные элементы, без племенной принадлежности названы татарами. Этот факт, несомненно, стимулировал процесс осознания собственной коллективности и большинства у населения тюркского происхождения и в первую очередь у формирующейся интеллигенции.

Более того, в переписях разных годов для населения тюркского происхождения использовались термины татары, азербайджанские татары, а для обозначения их языка иногда даже использовался термин – азербайджанский язык. На наш взгляд этот факт искусственно стимулировал поиски этнического самоназвания в среде тюркоязычного населения, более того, подготавливал почву, к тому, чтобы в будущем, уже в 20 веке за регионом закрепился искусственный термин Азербайджан, а за населением, не менее искусственный этноним – азербайджанцы.

**ՀԱՅԿԱՆՈՒՇ ՄԵՍՐՈՊՅԱՆ**
*Բանասիրական գիտությունների թեկնածու, դոցենտ,*
*ՀՀ ԳԱԱ լեզվի ինստիտուտի ավագ գիտաշխատող*
haykanushm@mail.ru

# «ԱՍՏՎԱԾ» ԽՈՐՀՐԴԱՆՇԱՆԸ ՀԱՅԵՐԵՆԻ ԲԱՐԲԱՌՆԵՐՈՒՄ

**Բանալի բառեր.** *Բարբառ, խոսվածք, հայերեն, խորհրդանշան, Աստված, Գրիգոր Տաթևացի, հնչյունական զուգաբանություն:*

Կրոնական հավատալիքի հիմքում ընկած է աստծու գաղափարը: «Երկրի վրա Աստծո մարմնավորումը այդ ըմբռնման կենդանի խորհրդանիշն է», այն նաև ազատության խորհրդանիշն է, և մարդ անհատի ազատությունը կվերաճի բուն ազատության, եթե նրա հոգում խոսի «աստվածային Բանը կամ նույնն է Խիղճը»[1]:

*Աստված*[2] խորհրդանիշի լեզվական համապատասխանակն ավանդված է հնդեվրոպական նախալեզվից, պատկանում է հայերենի բառապաշարի բնիկ շերտին, հատուկ է հայերենի զարգացման բոլոր փուլերին, նաև տարածքային տարբերակներին: «Հայ մատենագրության մեջ *աստուած* բառը գործածվել է բավականին բարձր հաճախականությամբ. այն հայ քրիստոնեական եկեղեցու տերմինաբանության առանցքային, առավել կարևորություն ունեցող միավորներից է»[3]:

Ժամանակի ընթացքում վերարժևորվում է *աստված* հասկացությունը. տեղի է ունենում բառիմաստի որոշակիացում: Բազմաստվածությանը բնորոշ *աստվածներ* հոգնակի ձևի փոխարեն գործածական է դառնում եզակի թիվը՝ շեշտելով քրիստոնեական դավանաբանությանը հատուկ միաստվածությունը՝ ի դեմս Հիսուս Քրիստոսի:

*Աստվածներ* հոգնակի ձևի գոյությունն է վկայում Պոլսի բարբառի *աստվածները վար իջեցնել*[4] («մեծ-մեծ խոստումներ տալ») արտահայտությունը, որի մասին Հ. Աճառյանը գրում է. «Յոգնակին կը ցուցնէ, թէ այս ոճը նախաքրիս-

---

[1] **Աթայան Է.,** 2005, 137:
[2] Տե՛ս **Մսերեանց Մ.,** 1861–1862, 8–10:
[3] **Համբարձումյան Վ.,** 2002, 11:
[4] Բարբառային օրինակները բերվում են ըստ բարբառագիտական մենագրությունների, բարբառային բառարանների, ՀՀ ԳԱԱ լեզվի ինստիտուտի ձեռագիր նյութերի, բարբառախոս վայրերում մեր կատարած հարցումների:

տոնէական դարձուած մըն է»[5]: Հեթանոսական մտածողության արդյունք կարելի է համարել նաև Սասուն-Մոտկանի տարածաշրջանին բնորոշ *ըավրձուտեն* («աստվածություն») հավաքական գոյականը՝ համարժեք *աստված* բառին. հմմտ. «*Ըավրձուտեն յիմածավ, ջամկեծ ըզիըրիշտագ*»[6]: Կարծում ենք՝ Արարատյան բարբառի Լոռու խոսվածքին բնորոշ *աստվածան* ձևը ևս հոգնակի կազմություն է[7]: Հմմտ. «*Բաս դու աստվածանից բսկի չես վախո՞ւմ*»: Կարծում ենք՝ *աստվածան* հոգնակի ձևի հնչյունական ամփոփման հետևանք է նաև Լոռու, Քանաքեռի և այլ խոսվածքներին բնորոշ *աստան* զուգաբանությունը, որը, սակայն, ժամանակի ընթացքում ստացել է եզակիի իմաստ. «*Աստանի խընթըրէլ էմ՝ տունըտ բըրիշակ ըլի գըլխիտ*»[8]:

Գրական հայերենում, ինչպես նաև հայերենի բարբառներում *աստված* բնորոշվում է միայն իրեն հատուկ մի շարք մակդիրներով:

Հայոց լեզվի բառային կազմն ամփոփող բառարաններում բազմաթիվ են աստվածորոշիչ կամ աստվածայինին ստորոգելի[9] ձևաիմաստային միավորները, որոնցից են՝ *ամենաբաշխ, ամենաբարեձև, ամենաբարեպաշտ, ամենաբավ, ամենաբժիշկ, ամենաբույժ, ամենագթած, ամենագոլխ, ամենաթագավոր, ամենալույս, ամենալուսափայտ, ամենախիղճ, ամենախնամ, ամենախնկավոր, ամենակատար, ամենահայր, ամենաձայն, ամենաշնորհող, ամենապահ, ամենապանծալի, ամենապարգևող, ամենարար, անժամանակ, աշխարհահայր, աստվածագործ, արարչաղիր, արարչախնդիր, արարչեղեն, բազկատարած, բազումողորմ, բան ոյառն, գերագլուխ, գվարթուն, Է, էություն, պետական, վեհն, վերնական, տեսնող, տերունագույն, ընեական* («էական»)*, ընեատես, փառաբանություն, փառք պատվիրան, պատգամատար, շնորհաբաշխ, նախահայր, նախախնամականն, հոգևաստված* և այլն[10]: Ինչպես տեսնում ենք, հաճախադեպ են *ամենա-* գերադրական աստիճանի ցուցիչով կազմությունները:

Գրիգոր Տաթևացին աստծուն բնորոշում է *ողջոյնառաքն* նորաբանությամբ[11]:

Նշված բառերի գերակշիռ մասը գրքային է, ունի բառարանային գործաբանական արժեք, ժամանակակից հայերենում՝ գործածության շատ նեղ շրջանակ, ուստի և բնորոշ չէ հայերենի ժողովրդախոսակցական տարբերակին: Սրանցից մի քանիսը հայերենի բարբառներում կորցնում է հիմնական իմաս-

---

[5] **Աճառեան Հ.,** 1913, 140–142:

[6] **Աղամյան Հ.,** 1969, 524:

[7] Տե՛ս **Ասատրյան Մ.,** 1968, 102:

[8] Նույն տեղում, 156:

[9] Աստվածաբանական գրականության մեջ գործածվող տերմին:

[10] Տե՛ս Ժամանակակից հայոց լեզվի բացատրական բառարան, 1969–1980: **Գաբամաճեան Ս.,** 1910: **Ճիզմէճեան Պ.,** 1954–1957 և այլն:

[11] Գրիգոր Տաթևացին աստվածամորն անվանում է *ողջոյնընկալն* [հմմտ. **Գրիգորյան Ս.,** 2012, 64]:

տագործառական ոլորտը կամ փոխարինվում է աստվածայինի այլ ստորոգելիներով, որոնց անդրադառնում ենք ստորև:

*Աստված* բառը մի շարք բարբառներում և խոսվածքներում պահպանում է գրական ձևը (Երզնկա, Արտամետ, Բերկրի, Աղաբազար, Մանազկերտի Բադնոս, Ջուղա, Սուրմալուի Մոլլաղամար և այլն): Տարածքային տարբերակների մեծ մասում հանդիպում են հնչյունական տարբերակներ: Երևանի (Իգդիր, Կողբ), Ղարաբաղի (Գորիս), Թիֆլիսի, Ագուլիսի բարբառներում շեշտվում է *աստված* բառի առաջին վանկի ձայնավորը՝ համապատասխանաբար դառնալով *ա՛ստվա՛ծ*, *ա՛ստօձ*, *ա՛ստուծ*, *ա՛ստուձ* և *ա՛սված*:

Հայերենի տարբեր բարբառներում առկա է հնչյունական տարբերակների հետևյալ բաշխվածությունը (թվով՝ 55 տարբերակ):

ա) <u>Արևելյան, նաև պարսկահայ բարբառախումբ</u>**.** *ա՛ստըված* (Բայազետի Կարմիր գյուղ), *աստըվա՛ծ* (Սուրմալուի Բլուր), *աստած* (Ագուլիս), *աստօծ* (Շամախի, Գեղարքունիքի Վերին Ճամբարակ, Ամբերդ, Փերիայի Դողս), *աստոձ* (Լոռի) և այլն: Հմմտ. «<u>*Ասվածէն*</u> *իրէք խընձօր վէր ընգ'անէլի*» (Կռզեն)[12]:

Բարբառների արևելյան խմբակցության Խոյ-Մարաղայի կամ հարավարևելյան բարբառախմբի Մարաղայի բարբառում[13] *աստված* բառի սեռական հոլովաձևն է *աստու*: 1828 թ. նշված վայրից Օրդուբադի Ազա բնակավայր տեղափոխվածների խոսվածքում *աստու*-ն ընկալվում է որպես բառի ուղիղ, այսինքն՝ ուղղական հոլովաձև: Հայտնի է, որ նոր բնակավայրում՝ լեզվական նոր միջավայրում, գրական լեզվի ազդեցությամբ Մարաղայի բարբառը տեղի է տվել. հատկապես հոլովական համակարգում դադարել է գործել ձայնավորների ներդաշնակության օրենքը: Միջին և նոր սերնդի լեզվական հաղորդակցության միջոց է դարձել ժողովրդախոսակցական հայերենը՝ բարբառային որոշակի տարրերով: Կարելի է ասել, որ մինչև 20-րդ դարի 80-ական թվականները Վերին և Ներքին Ազայում բնակվող միջին և նոր սերունդը, հին սերնդից լսելով *աստու* թեք ձևը, ընկալել է որպես բառի ուղիղ ձև, իմաստափոխել է այն, որի հետևանքով ստեղծվել են քերականական համանուններ:

Արդվինի, Հավարիկի և Արեշի բարբառային տարածքներին բնորոշ է *աստուված*, Ղարաբաղի բարբառի Պողոսագոմեր գյուղի խոսվածքին՝ *աստուվա՛ծ* հնչյունական տարբերակը, որում գրաբարյան *ու* (*վ*)-ի կողքին ավելացել է համարժեք *վ*: Տվյալ դեպքում հին հայերենից պահպանված հնչյունական իրողության կողքին առկա է նորը: Հմմտ. «<u>*Աստուված*</u> *չի անի*»[14]: «<u>*Աստուված*</u> *խէլք փայ տալիս դու հօրտէ՞ էյր*» (Արեշ)[15]:

[12] **Բաղրամյան Ռ.,** 1961, 232:

[13] Բարբառների դասակարգման մասին տե՛ս **Ջահուկյան Գ.,** 1972, 132–136:

[14] **Ալավերդյան Ս.,** 1970, 189:

[15] **Լուսենց Ա.,** 1982, 246:

Բառագործածության հաճախականությամբ պայմանավորված՝ նույն բարբառատարածքում կարող են զուգահեռաբար օգտագործվել *աստված* բառի մի քանի հնչատարբերակներ: «*Աստուած* բառը ժողովրդական լեզուում զանազան կրճատումների է ենթարկվում. օրինակ, նոյն զօկ բարբառում՝ *Աստված, Աստած, Աստված*, սեռ. հ. *Աստուծու, Ածու, Աստու*»[16]:

բ) Արևմտյան բարբառախումբ. *ա(տ)վաձ* (Նիկոմեդիայի Արմաշ), *աստվօձ* (Մարաշ), *աղվաձ* (Տիգրանակերտ, Սուչավա), *ըդվաձ* (Սասունի Ընգուզնակ և Սաղդուն), *ասպած* (Վան, Թիմարի Մարմետ և Պողանց), *ասպաձ* (Մուշ), *ավօձ* (Հաջըն), *աբաձ* (Ակն), *աբօձ* (Զեյթուն), *աստուձ* (Յողուն-օլուկ, Հաջի-Հաբիբլի) և այլն: Հմմտ. «*Աստուձ յէր բուլ խազնին ըլսմատըտ շօղ թըղ ուղու*» (Խտրբեկ)[17] <(«*Աստված իր լի գանձարանից բաժինը շատ թող տա*»):

Պոլսի բարբառին բնորոշ է *ս* բաղաձայնի դրափոխությամբ, *տ* խուլի կորստով և *ծ* խուլի ձայնեղացմամբ *սավաձ* հնչյունական զուգաբանությունը:

Կան հնչյունական զուգաբանություններ, որոնք ընդլայնում են կիրառման շրջանակը՝ գործածվելով և՛ արևելյան, և՛ արևմտյան, և՛ պարսկահայ տարածքի բարբառներում, ինչպիսիք են՝ *աստըված* (Ղարաբաղ, Իջևանի Ծաղկավան, Սպարկերտի Տոսու և Վերին Հուրուք, Խիզանի Պոռշենց, Էջմիածնի Աղավնատուն և Հայթաղ), *աստվաձ* (Խոտրջուրի Միջին թաղ, Սասունի Գոմք, Խութի Թաղավանք, Փերիայի Շուրիշկան, Իգդիրի Հախվերիս), *աստըվաձ* (Արծափի Կոգովիտ, Բուլանուխի Գյաբըլներ, Բյուրականի Երևան թաղամաս[18], ԼՂՀ Մարտակերտի Առաջաձոր, Ջանյաթաղ և Մաղաղիս), *ավված* (Բուլանուխ, Երզնկա, Կարին, Մարաղա, Սալմաստ, Աշտարակի Անտառուտ, Կռզեն) և այլն:

Տարածքային նման բաշխվածությունը ևս խոսում է *աստված* բառի լեզվական առումով համընդհանուր լինելու, հաճախակի գործածվելու մասին:

Ինչպես արդեն նշեցինք, աստվածայինի ստորոգելիները գրական հայերենում և հայերենի բարբառներում արտահայտվում են տարբեր բառախմբերով: Պոլսի, Նիկոմեդիայի, Աղաբազարի և Տիգրանակերտի բարբառներում գործածվում է *ջըշմարիղ* բառը՝ միայն *ջըշմարիղ աստված* երդման բանաձևի մեջ: *Շեն* բառի *շէօն* հնչատարբերակը ծայր հյուսիսարևմտյան միջբարբառախմբի Սուչավայի բարբառում մակբայաբար կիրառելի է միայն *աստված շեն պահե* բարեմաղթանքի մեջ[19]: Մուշի բարբառի Բուլանուխի խոսվածքում *հազարաստեղծ* ածականն իմաստի նեղացման հետևանքով դարձել է պատվանուն, որով բնորոշվում է միայն աստված՝ «*մեկ աստված ու հազարաստեղծ*»[20]: Վանի բար-

---

[16] **Սարգսեանց Ս.,** 1883, 25:

[17] **Հանանյան Գ.,** 1995, 158:

[18] Արագածոտնի մարզի Բյուրական բնակավայրը բարբառախոսները հիմնականում բաժանում են 2 թաղամասի՝ Երևանի և Խոյեցիների:

[19] **Աճառյան Հ.,** 1953, 281:

[20] **Բենսե,** 94:

բառում *անկապատ* («անպակաս, անթերի»), *անեզական* (*անեզական աչը*՝ «աստծու ձեռքը»), *անխուն* (<ան+հուն, «անսահման», հմմտ. «*Տ'ու ք'ո* <u>*անխուն*</u> *աստված սիրես*») ածականներով բնորոշվում է միայն աստված: Խարբերդի բարբառի Բալուի և Մուշի բարբառի Բուլանուխի խոսվածքներին հատուկ է *անահուն* հոդակապավոր տարբերակը: *Անհուն* և *անահուն* տարբերակները համեմատելիս կարելի է նկատել երկրորդ՝ հոդակապավոր բարդության՝ իմաստային առումով ավելի շեշտված, ընդգծված լինելը: Կարելի է ասել, որ տվյալ դեպքում *ա* ձայնավորը (հոդակապը) ձեռք է բերում իմաստատարբերակիչ հատկություն՝ ինչ-որ առումով համարժեք ածականի *ամենա-* և *ամենից* գերադրական աստիճանի ցուցիչներին:

*Աստված* խորհրդանիշով են պայմանավորված Մուշ-Բուլանուխ բարբառային գոտուն հատուկ *տըվածուրիկ*, Բեյլանի բարբառի *աղուձմէ* և *ղըվկըմօն* (=«տրված») բառանունները՝ «աստծուց տրված, երկնատուր», նաև «նվիրական» իմաստներով: Այդպես նաև *ցասում*//*սասում* բառը (Մուշ, Ալաշկերտ, Վան, Երևան, Սալմաստ), որով բնորոշվում է միայն աստվածային բարկությունը[21]:

Բարբառային բառապաշարում *աստված* հասկացությունը և աստվածային զորությունը համադրվում են *հոր, տիրոջ, լույսի, երկնքի, անսահմանի* և *երկնագույն, կապույտ* գունանունների հետ:

Հարավարևմտյան կամ Կիլիկիայի բարբառատարածքում Սուրբ երրորդության[22] *Հայր աստված* կողմի անվանումներից են *ավաձ բաբա* (Տիգրանակերտ), *ավօձ բաբիգ* (Հաջըն) բառակապակցությունները՝ բաղադրված պարսկերեն بابا (*բաբա*՝ «հայր») բառով: Նշված բարբառային գոտում Հայր աստված, որին «Տերունական աղոթքում» դիմում են «Հա՛յր մեր» կոչականով, ունի հոմանշային հետևյալ դրսևորումները՝ *միր պապը* (Մարաշ), *մէյ պօպը* (Զեյթուն), *մէյ խըկինքը կինէդ պօպը* (Հաջըն), *հա՛ր միր իրգինքի // օվ միր բօբը* (Բեյլան), *մեր բիբը // միր բուէօբը* (Քեսաբ), *միր դուդը* (Հաջի–Հաբիբլի), *միր դուդա* (Արամո), *եա մէր տուտը* (Սվեդիա): Կարծում ենք՝ *դուդա* //*դուդը* //*տուտը* բառերը թուրքերեն dede («պապ») բառի հնչատարբերակներն են: Հմմտ. «<u>*Ուվ միր դուդը*</u>, *քի յըրգէնքն իս*» (Հաջի–Հաբիբլի): «<u>*Ուէօվ մեր բուէօբը*</u>, *սիւրփ թըղ ըննիու էնէօունըդ*» (Քեսաբ): «<u>*Յա միր դուդա*</u> *հի գուս յէրգէնքա, սարփ ըննու քու անուննա*»[23]: «<u>*Միր պապը*</u> *քի իրկինքն իս, քինիտ անունիդ սուրբ թըննօ*» (Մարաշ): «<u>*Օվ միր բօբը*</u>, *ք'ի իրգինքն իս, քինիտ անունիտ սուրփ թըղ ըննօ*» (Բեյլան)[24]:

---

[21] **Աճառեան Հ.**, 1926, հ. 4, 451:
[22] Տե՛ս **Երրորդութիւն**, 1870, N 46, 92–94:
[23] Տե՛ս **Աճառյան Հ.**, 2003, 536–537:
[24] **Քյուփեյան Հ.**, 2008, 14–15:

Բարբառային նյութերից պարզվում է, որ *աստված* բառով արտահայտվում է Սուրբ երրորդությունը, և սակավադեպ են այս եռամիասնության միայն մեկ կողմը հատկանշող հոմանիշները: Մեր ուսումնասիրության ընթացքում Սուրբ երրորդության եզակի տարբերակի հանդիպեցինք միայն Արամոյի բարբառում: Հմմտ. «*Օրշինալ համաքում ու բըյթըը հաղաչ ընբ'ժնվազ* <u>*սաւրփ Էրօրյթօէյնա գԴուղա ու գՁըրթա ու գՀօրէյն սաւրփա,*</u> *համազալբի յէդդայն յէդդայնբ*» (=«Օրհնեալ համագոյ եւ միասնական, անբաժանելի Սուրբ երրորդութիւնն, Հայր եւ Որդի եւ Սուրբ Հոգի, այժմ եւ յաւիտեանս յաւիտենից»): «*Մաջղ* <u>*Դուղա ու Ձըրթա*</u> <u>*ու Հիբէն Սաւրփա*</u>»[25] (=«Փառք Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն Սրբոյ»): Մաղթանքի նշված բարբառային ձևերի, ինչպես նաև Սվեդիայի, Բեյլանի, Զեյթունի, Մարաշի, Արամոյի տարածքային տարբերակներով «Տերունական աղոթքի» առկայությունը կարելի է բացատրել Կիլիկիայի բարբառի՝ Կիլիկիայի հայոց թագավորության պետական լեզու լինելու հանգամանքով:

Անտիոքի կամ ծայր հարավարևմտյան բարբառախմբից և Կիլիկիայի կամ հարավարևմտյան միջբարբառախմբից բացի բարբառային մեկ այլ տարածքում «Հա՛յր մեր» տերունական աղոթքն ասվում է միայն գրաբարով:

Սուրբ երրորդության գաղափարին են առնչվում Պոլսի բարբառի՝ *հյուր*↔ *տանտեր* հարաբերություն արտահայտող հետևյալ երկխոսությունը՝ «*սուրփ ասված իրեք է*» (ասում է տանտերը, երբ հյուրին երրորդ անգամ որևէ բան է հյուրասիրում և հորդորում, որ վերցնի), «*սուրփ ասված չէ, քի իրեք հեղ ըսեմ*» (ասում է հյուրը, երբ ուզում է մերժել իրեն երրորդ անգամ առաջարկված մի բան)[26]:

Ղարաբաղի բարբառի որոշ խոսվածքներում և Հավարիկի բարբառում *աստված* բառին հոմանիշ է *միեանտէր* բարդությունը. կարծում ենք՝ «*միատէր* // *միակ տեր*». հմմտ. «*Սուտին տունը* <u>*Միեանտէրը*</u> *քանդը*» (երդման արտահայտություն)[27]: Լոռու խոսվածքում հայր աստված բնորոշվում է *անճառ մին* բառակապակցությամբ. հմմտ. «*Ո՛վ* <u>*անճառ Մին,*</u> *որ ամենին միացնում ես մի կյանքում*»[28]:

Սուչավայի բարբառում աստծուն անվանում են *յէրգնավօր*, Ռզմում՝ *յէրգնատէր*, Թիֆլիսում՝ *յիրգնատէր*, Պոլսի և Խոտրջուրի բարբառներում՝ *էյնավոր* («երկնավոր»): Հմմտ. «*Մ'ընէր անօրէն, կը զոնեա* <u>*Էյնավորէն*</u>»[29] //«*Մը հեր անօրեն, կը կըթեա* <u>*էյնավորեն*</u>» (= «Մի՛ արա//լինիր անօրեն, կպատժվես աստծուց»): Այս հոմանիշը բնորոշ է նաև Արցախի Ասկերանի Սղնախ գյուղի խոսվածքին:

---

[25] **Աճառյան Հ.,** 2003, 538–539:
[26] **Աճառյան Հ.,** 2009, 133:
[27] **Տեր-Պողոսյան Գ.,** 1921–1922, գիրք Ա–Բ, 177:
[28] **Թումանյան Հ.** [http://granish.org/hovhannes-tumanyan]:
[29] **Աճառյան Հ.,** 2009, 125:

վածքին՝ *Եռռնավոր* հնչյունական զուգաբանությամբ: Տվյալ դեպքում, կարծում ենք, կրկնակ *ռ*-ի միջոցով բարբառախոսներն արտահայտում են երկյուղ և ակնածանք գերագույն ուժի նկատմամբ: *Երկնավոր* ածականը Պոլսի բարբառում համադրվում է *դատավոր* գոյականի հետ՝ կազմելով *է՞յնավօր դադավօր* (=«երկնավոր դատավոր») բառակապակցությունը՝ «արդարն ու անիրավը, դրախտայինը և դժոխայինը սահմանող» իմաստով: *է~յնավօր* բառի *է* ձայնավորն արտաբերվում է երկար, տևական հնչերանգով՝ թերևս ընդգծելով աստվածային զորությունը: Կարող ենք ասել, որ տվյալ օրինակում հնչերանգը ևս իմաստի սաստկացման դեր է կատարում:

Սեբաստիայի բարբառում *դ՛ադավէր* բառը ենթարկվել է իմաստի նեղացման, գործածվում է միայն *աստված* իմաստով՝ նկատի ունենալով աստծու՝ երկնային արքայության դատավոր լինելը: Կարծում ենք՝ *դատավոր* հասկացությանն է առնչվում Քանաքեռի խոսվածքի *հախ միայն տէրը* կազմությունը՝ բաղադրված թուրքերեն hakkın («իրավունք») բառով: Պոլսի բարբառում *աստված* բառին հոմանիշ է *վերին* ածականը (հմմտ. «Վերինը գիտէ»[30]= «Միայն աստծուն է հայտնի»): Արարատյան բարբառում առկա է *վէրնէրի տէր,* այսինքն՝ «երկնքի ու երկնային մարմինների տեր», *իյգինք և իյգիյ ընձեղանի* (Հաջըն), այսինքն՝ «երկինք և երկիր ստեղծող, երկնայինների և երկրայինների արարիչ» (հմմտ. «*Հայ լուսացօվ լուսն ի պայի, Փառավորյալ <u>իյգինք և իյգիյ ընձեղանի</u>*»)[31]: Խարբերդի բարբառում *աստված* բառի հոմանիշն է *ղեղծօղ* («ստեղծող») ենթակայական դերբայը, Նախիջևանի տարածաշրջանի Ազայի խոսվածքում՝ *յէրջինչ-ջէղին* (*վըկա*) հարադիր կազմությունը: Կապանի տարածաշրջանի Ներքին և Վերին Խոտանան գյուղերում աստծուն անվանում են *յէրէ կապօտ*, Ղարաբաղում՝ *թառ աստված* (*թառ*՝ «կապույտ», որից՝ *թառ աստւ իրէս*, այսինքն՝ «երկնիք»), Մուշում՝ *կաբուդնոռ ա՛ստված* և այլն: «*էն կապօտը*» («աստված վկա») երդման արտահայտությունը բնորոշ է Ղարաբաղի և Կապանի տարածքային տարբերակներին:

Կարնո, Մուշի (Բաղեշ), Թիֆլիսի բարբառներում *կապույտ*-ի փոխարեն առկա է *ժանգառի* ածականը («բաց կանաչ»), որից էլ կազմվում է *ժանգառի աստված* երդման արտահայտությունը՝ նաև «կապույտ երկինք» փոխաբերական իմաստով:

Արարատյան բարբառի Երևանի խոսվածքում, Մուշի, Սասունի, Թիֆլիսի և այլ բարբառներում առկա է *յէս իմ հոգին // յէս ու իմ հոգին* երդման ձևը, որի «աստված վկա» իմաստից կարելի է ենթադրել, որ նշված վայրերում *աստված* բառին հոմանիշ է *հոգի* գոյականը, այսինքն՝ տվյալ տարածքում որպես *աստված* բառի համարժեք՝ նկատի է առնված եռամիասնության Սուրբ հոգի կող-

[30] **Անառյան Հ.,** 2009, 134:
[31] **Գասպարյան Հ.,**1966, 142:

մը[32]: Պարսկահայ տարածքի բարբառներում գործածվում են Սուրբ երրորդության Հայր և Որդի կողմերը միաժամանակ՝ *հայր ու որդի*՝ որպես զարմանքի, անհամաձայնության դրսևորում, որի հոմանիշը կարելի է համարել *Իսուս քեզ Քրիստոս* արտահայտությունը[33]:

Պոլսի միջբարբառային տարածքում առկա է *փրկիչ* հոմանիշը: *Աստված* → *Փրկիչ*, ապա «Սուրբ Փրկիչ» անվանումով պայմանավորված իմաստափոխության հետևանքով Պոլսի բարբառում կազմվել են *փըրկիչին խենթը, փըրկիչին փախուկը, փըրկիչ-բոլորից* (= «փրկիչ բոլորից»), *հոռոմների փրկիչը, փրկիչեն փախած խենթ* («սակավամիտ») բառակապակցությունները՝ «ցնորված», «խենթ» իմաստներով: Իմաստային նման բացասական անցումը, թերևս, կատարվել է Պոլսի ազգային հիվանդանոցի «Սուրբ Փրկիչ» անունից (հիվանդանոցն ունի նաև նյարդային հիվանդների բուժման բաժանմունք):

Բարբառային բառապաշարում որոշակի քանակ են կազմում *աստված* բառով կազմված բաղադրությունները. ինչպես, օրինակ՝ *աստվածաբաշտ* (Պոլիս) // *ասվածաբաշտ* (Մալաթիա) // *ըստուծապաշտ*, *ընաստօծ* (= «էն աստված») (Գորիս), *ասդվաձասեր*, *անասվաց* (Առտիալ, Սուչավա), *անաստօծ* // *անասվաձ* // *անասված* (Մալաթիա), *Ասպատուր* (Վան) և այլն: Մուշ – Տիգրանակերտի բարբառի Բուլանուխի խոսվածքում գործածվում է «*Գուլթան, գուլթան <u>աստվածաքուս,</u> Գուլթան գըրնաց հըտ առափուս*» շուտասելուկը[34]:

Մի շարք կազմությունների իմաստային հիմքում ընկած են սնոտիապաշտական ընկալումներ. օրինակ՝ բուլանուխցիների բառապաշարում *ասվածամորթ* նշանակում է «մարդու ձեռքով չմորթված, այլ սատկած, իբրև թե աստծու մորթած», իսկ *ասվածամերք*՝ «թթված կաթի ինքնիրեն, առանց մերանի կամ մակարդի մածուն դառնալը, մերվելը»[35]:

*Աստված* հիմքով են կազմված *աստվածածին* և *աստվածամայր* քրիստոնեական տերմինաբանության կարևոր միավորները:

*Աստծու(ն)* հատկացուցիչն է առկա *աստու* // *աստու օր* (Մուշի Դուգնուգ, Ջառ, Ալափարս և Թդիթ), *աստուծուն օրը* (Պոլիս), նաև՝ *աստվածային իր օրը* (Նոր Նախիջևան), *աստուծան առտուն*[36] (այսինքն՝ «ամեն օր»), *աընձ՛ու մէքիզ* = «աստծու ոչխարիկ, մաքի» (Քեսաբ) «զատիկ բզեզը», *աստու ք՛օղիզ* (Գյումրի),

---

[32] Տե՛ս **Հոգին սուրբ**, 1870, N 48, 141–142:

[33] Օրինակն ըստ բ.գ.դ., պրոֆեսոր Լ. Հովսեփյանի (բանավոր հաղորդում):

[34] **Բենսե,** հ. 2, էջ 33 [ՀՀ ԳԱԱ լեզվի ինստիտուտի ձեռագիր նյութ]:

[35] Նույն տեղում:

[36] *Աստված* բառով կազմված նկարագրական մյուս արտահայտություններից տե՛ս **Աճառեան Հ.,** 1913, 140–142: Նաև՝ **Ամատունի Ս.,** 1912, 62:

*աստըձու կօղի* // *ածու կօղի* (Սևերեկ) «ծիածան» բառակապակցություննե-րում[37]:

Անդրադառնալով *աստված* բառի սեռական հոլովաձևի առանձնահատ-կությանը՝ Յ. Կարստը գրում է. «Ժամանակակից ավանդույթի համաձայն, *աստուած* գոյականից կազմվում է *աստուծոյ* սեռականը a-ի կորստով, իսկ «կուռք, հեթանոսական աստված» նշանակությամբ, ընդհակառակն, կանոնավոր ձև է *աստուածոյ*»[38]: Մեր ուսումնասիրության ընթացքում սեռականի նման ձևի չհանդիպեցինք: Մի շարք բարբառատարածքներում առկա են հատկացուցչի հետևյալ հոլովաձևերը. *աստւձու* (Զեյթուն), *աստու* (Մարաղա), *աստւ* (Կարին, Շամախի), *աստուձու* // *ասձուձու* // *ասձու* (Պոլիս), *ածի* (Կոզեն) և այլն:

Հայերենի բարբառներում *աստված* բառով կազմվում են նաև դարձվածք-ներ, երդման, օրհնանքի, բարեմաղթանքի, անեծքի բանաձևեր, նկարագրական արտահայտություններ, խոսքի փոխաբերացված միավորներ և այլն: Նման կազմությունները բարբառային բառապաշարում ունեն թե՛ դրական և թե՛ բա-ցասական իմաստ՝ հատկանիշի սաստկականությամբ. քիչ չեն նաև չեզոքութ-յուն արտահայտողները: Այդպիսի կազմություններից են՝ *ասպած ծեր սեր ժուռ պախի* (Վան), *աստուձը աշք յրրվան* (Սվեդիա)[39] (= «աստծու աչքը վրան»), *ասպաձէ ցէզի հէդ էլլի* (Համշենի Խոփա և Բորչկա)[40] և այլն:

Լոռու խոսվածքի *աստոծ միչին ման ա էկել* նկարագրական արտահայ-տությամբ ընդգծվում է տվյալ վայրի գեղեցկությունը, ինչպես՝ «*Էս դաշտի միչին Աստոծ ա ման էկել*»: *Աստուծո հրդէցը* (= «ուղի») *վրա իդալ* (Ղարաբաղ), այսինքն՝ «ճիշտ կենսակերպ վարել». հականիշը՝ *աստուծո հրդէցէն ռծս կալ* («անօրի-նություն կատարել»):

Բացասական հատկանիշ են արտահայտում *աստծու ահը սրտից հանել* («հանդգնել»), *աստծու էրեսիցը թափած* («անամոթ») (Երևան), *աստըծուն աստ խանչել* (Ալաշկերտ), «*Սուրբ աստվածն» ալ մոռնալ*[41] (Ղուլթիկ, Վան) («ամբար-տավանել») դարձվածքները: Վերջին դարձվածքն առնչվում է ամենից շատ աս-վող, եկեղեցական բոլոր խորհուրդների և ծեսերի ժամանակ հնչող «Սուրբ աստված, սուրբ և հզոր» ամենօրյա աղոթքին, այսինքն՝ անգամ դա մոռանալ:

Բարբառային բառապաշարում մեծ թիվ են կազմում անեծքի և հանդիմա-նության արտահայտությունները. վրեժխնդրությունը, չկամությունը և չարութ-յունն ի կատար ածելը հանձնարարվում է աստծուն**.** *ասպաձ քէզի խէնդասնա օչ*՝

[37] *Ծիածան* հասկացության բառազուգաբանությունները քննել է Ա. Հանեյանը [տե՛ս *Հանե-յան Ա.*, 2005, 87–104]:

[38] **Կարստ Յ.,** 2002, 49:

[39] **Անդրեասյան Տ.,** 1967, 135:

[40] **Վարդանյան Ս.,** 2009, 181:

[41] Տե՛ս **Ժամագիրք ատենի,** 1999, 298–299: Նաև՝ **Ժամագիրք ատենի,** 2003:

«աստված քեզ չուրախացնի» (Համշենի Խոփա և Բորչկա)[42], *աստված դատաստանդ անի, աստված գըլխիդ քար գըցի* և այլն, և այլն:

Մարդու բացասական հատկանիշները բնորոշվում են հետևյալ բառակապակցություններով՝ *աստուծո եզը*՝ «բութ» (Պոլիս), *աստուծո կովը* (Կարին, Պոլիս), *աստու խենթը* (Սեբաստիա), *աստըծու պէծ ու կըրակ, աստըծո պատիժ // պատիջ* (Երևան, Նոր Նախիջևան, Մուշ), *աստըծու բէդիլք* (Տավուշի Չինչին) և այլն: Ենթադրելի է, որ վերջին բառակապակցության *բէդիլք* բաղադրիչը կազմված է պարսկերեն بی (*բէ*) ժխտական նախածանցով և թուրքերեն dil («դիլ»)՝ «լեզու» բառերից, այսինքն՝ «աստծու կողմից ստեղծված այնպիսի բացասական էակ, որը հնարավոր չէ անգամ լեզվով նկարագրել, մի անուն դնել»: Կարելի է նաև թարգմանել որպես «աստծու անլեզու», այսինքն՝ փոխաբերաբար՝ 1) «սակավամիտ, խելապակաս», 2) «հեզ»: Նշված բառակապակցություններում *աստված* բաղադրիչն էլ ավելի է շեշտում բացասական հատկանիշը:

Համառություն են մատնանշում *մեռնել, մեղա աստծու չասել* (Աշտարակ, Լոռի), *օխտը գոմէշ տալ, մեղա աստծու չասել* (Շիրակ, Նարման) նկարագրական ձևերը:

Հարավարևելյան բարբառախմբի Դավրեժի խոսվածքում ճարպիկ գողը բնորոշվում է *աստուծո գտակը ձեռքն ընկնի*, *կը գողնա*[43] նկարագրական արտահայտությամբ:

*Աստուծո յեռները* (Նոր Նախիջևան, Պոլիս) հատկացուցիչ – հատկացյալ բառակապակցությունն ունի որոշակի բացասական երանգ. այսպես՝ «*Ան ալ ի՞նչ տեղ է որ, աստուծո յեռները*», այսինքն՝ «հեռու, ամայի է»[44]: Երևանի խոսվածքի *աստված աղունն աղացել է* նկարագրական արտահայտությամբ բնորոշվում է անհոգ, անտարբեր մարդը, Պոլսի բարբառի *աստուծո աղեգագիր տվող* ձևով՝ չափազանց բարձրահասակ անձը: Այդպես նաև՝ թշվառ լինելը նշվում է *աստված ողորմիին բան* արտահայտությամբ, այն է՝ «այնքան թշվառ, որ կարող է ողորմել միայն աստված»:

Նշված օրինակների գերակշիռ մասն ունի ընդհանուր բարբառային բնույթ:

Հուսահատության պահին աստծուն դիմելու աղերսական իմաստ ունեն մի շարք հարադրավոր կազմություններ. *յաստուծ իննիլ* (Սվեդիա)[45], *աստված աստվածից անէլ // կանչել* (Արարատյան), *աստըծու չօքէրուց կախվէլ* (Կարին, Մուշ), *աստըծու փէշէրը (փէշը) կըտըրտէլ* (Արարատյան) և այլն:

---

[42] **Վարդանյան Ս.,** 2009, 181:

[43] **Աճառեան Հ.,** 1913, 141:

[44] **Աճառեան Հ.,** 1913, 141:

[45] **Անդրեասյան Տ.,** 1967, 135:

Սահմանականություն են նշում նաև հետևյալ նկարագրական ձևերը. *աստված էն հավը չխոսեցնի, աստված հեռու տանի*, *աստված չանի*՝ «չկատարվի» (Արարատյան, Քանաքեռ), *աստված խաբող չէնա, աստված չի հանդուրժի*՝ «անիրավություն է» (Մուշ, Բուլանուխ), *կուս կողմանէ աստծո*՝ «աստծու կողմից» (Թիֆլիս), *աստված քու տուն չակօլէ*[46] «անհաջողության չհանդիպես» (Մուշ, Բուլանուխ), *դեր աստուծ չուկայրըն*՝ «երանի չգան» (Սվեդիա)[47], *հի՞նչ էս քարալ աստծուն տամ* (ԼՂՀ Մարտակերտ) «հանդիմանություն հանիրավի դժգոհողներին» և այլն:

*Աստված* բաղադրիչով առածներն ու ասացվածքները «Հայկական առածանիում» շուրջ 200-ն են[48]: Հմմտ. «*Ճամփօրտի բ՛անը աստըձունն է*» (Շիրակ)[49]: «*Աստված սարը տըսնալի, ձիւնը տընէլի*» (Ուրմիա)[50] // «*Աստուծ կը տըսնա զլէր, կը թիլլի զձայն*» (Յողուն-օլուկ)[51] // «*Աստուծ գը դըսնա զլայը՝ գը թիլլի զձայն*»[52] : «*Աստված մէզ, ուր սղէղձուզ հըզար ու մէզ*» (Աշնակ)[53]:

Էնկյուրիայի թրքախոս հայերի մեջ տարածված է *ալլահտան շնօրք խստէ* («աստծուց շնորհք ուզիր») խորհուրդ-ասացվածքը:

*Աստված* բառին հոմանիշ արաբերեն *ռաբբի* (حاخام يا = «ով աստված») օտարաբանությամբ է կազմված հայերենի բարբառներում լայնորեն տարածված *յարաբ* («արդյոք») բառը[54]:

Նոր Նախիջևանի բարբառին բնորոշ է *էյբոհը* (= эй бог) ռուսաբանությունը՝ «աստվա՛ծ իմ» իմաստով:

Աստվածային կարևոր ստորոգելիներից է հրեշտակների դասը, որին Նոր Բայազետի, Մուշի, Երզնկայի և այլ բարբառներում համապատասխանում է *զօրքով* գործիական հոլովաձևը՝ համարժեք «ամուր, հզոր» ածականներին: Մուշի բարբառի Բուլանուխի խոսվածքում կա *չորեք կողման սըրբեր* արտահայտությունը, որով նշվում է հրեշտակների դասը: Փոքր Ասիայի բարբառախմբի Կարնո բարբառի *իշու հրեշտակ* ծաղրական արտահայտությունը բնորոշում է ծույլ, անբան, նաև պարզամիտ մարդու: Հմմտ. «*Հըրէշտակնին բէզ պըհապան կաննին*» (Բուրդուր)[55]// «*Հըրըշտացնէն բահաբան թըղ ըննուն քի*» (Խտրբեկ)[56]:

[46] *Ակոռի* տեղանունից առաջացած:
[47] **Անդրեասյան Տ.,** 1967, 140:
[48] Հմմտ. **Ղանալանյան Ա.,** 1951:
[49] **Գևորգյան Լ.,** 2012, 136:
[50] **Ասատրյան Մ.,** 1962, 183:
[51] **Աճառյան Հ.,** 2003, 533:
[52] **Անդրեասյան Տ.,** 145:
[53] **Գալստյան Լ.,** 2006, 234:
[54] Տե՛ս **Աճառյան Հ.,** 1952, 204:
[55] **Մկրտչյան Ն.,** 1971, 223:
[56] **Հանանյան Գ.,** 1995, 159:

Ասորերենից թուրքերենի միջոցով Բեյլանի բարբառին է անցել *մէլէգ* հոմանիշը (հմմտ. «*Տուն բէրլէմիշ գ'էնիս, ամմա Գաբրիէլ մէլէգը բէրլէմիշ չէնը*»)[57]:

Արևելյան բարբառային տարածքում (Ղարաբաղ, Բայազետ) հանդիպում է *հրեշտակ* բառի հականիշ իմաստով գործածություն: Ղարաբաղի բարբառի Մարտակերտի խոսվածքի *հրիշտրակը քեզ տանէ* անեծքի և հանդիմանության արտահայտություն է, որին հոմանիշ են *կա՛յէ՛, քյուլլի* բառերը՝ «սատանան քեզ տանի» իմաստով: Կամ՝ նույն տարածքում «*Նրա հի՞նչն ա ղաշանգ, հունցա հրիշտրակ ինի*», այսինքն՝ «հրեշտակի նման շատ տգեղ ու չար է»[58]:

Նոր Բայազետի բարբառում *հրեշտակ* բառի բացասական իմաստն արտահայտվում է տարակուսանքի, հարցական հնչերանգի միջոցով. *խըրիշտըրա՞կ ա* (այսինքն՝ «շատ տգեղ է»), որից էլ՝ *խըրիշտրակակոխ* բարդությունը՝ «սատանայական», «սատանայակոխ» իմաստներով[59]:

Մասի և ամբողջի իմաստային անցման հետևանքով մեծարվում է նաև աստծո աջ ձեռքը, այսինքն՝ *աջը*՝ որպես ապավինության, փորձություններից և մոլորություններից պաշտպանող միջոց: Գոյականաբար հանդես եկող *աջ* ածականը, որպես կրոնաեկեղեցական բառապաշարի միավոր՝ բարբառներում գործածվում է *սուրբ* մակդիրի հետ (սուրբ աջ):

Արարատյան բարբառի Քանաքեռի, Մեղրու բարբառի Կարճևանի, Ղարաբաղի բարբառի Շամախու խոսվածքներում հանդիպում է գրական հայերենին հատուկ *աջ* ձևը: Բարբառների մեծ մասում ունենք *ջ* ձայնեղ պայթականի շնչեղ խլացում՝ *աչ***.** Արարատյան (Լոռի), Ղարաբաղ (Բուրդուր), Թիֆլիս, Ջուղա, Ակն, Մուշ, Շատախ, Ոզմ, Ուրմիա (Սալմաստ) և այլն:

Սակավ թվով վայրերում ունենք *ա* > *ա՛* քմային, *յէ* երկբարբառային և *ջ* > *ճ* բաղաձայնական անցումներ. *ա՛չ* (Մոկս, Ոզմ), *յէօջ* (Ագուլիս), *աճ* (Մուշ, Ալաշկերտ, Սվեդիա): Այս ընդհանուր պատկերից տարբերվում են Համշենի բարբառին բնորոշ *աճի՛գ* փոքրացուցիչ-փաղաքշական ածանցավոր և *սաղ* (թուրք**.** sağ) փոխառյալ հոմանիշ ձևերը՝ «աստծո ձեռքը» իմաստով:

*Աջ* ածականը բարբառներում ևս բազմիմաստ է և նշանակում է նաև՝ «աջի ձևով շինված եկեղեցական անոթ, որի մեջ ամփոփվում է որևէ սրբի նշխար»:

Այսպիսով, *աստված* բառը հայերենի բարբառային բառապաշարի գործուն բաղադրիչներից է, հանդես է գալիս ոչ միայն հնչյունական զուգաբանությունների տեսքով, այլև որպես բառակապակցությունների, դարձվածային կառույցների և բաղադրյալ կազմությունների մաս: Մի շարք վայրերում գործածվում են հոմանիշներ: Բարբառներին բնորոշ չեն կրոնաեկեղեցական տերմինաբանությանը բնորոշ *Արարիչ, Բարձրյալ* անվանումները, քանի որ ունեն գրքային-գե-

[57] **Քյուփելյան Հ.,** 2008, 259:

[58] Օրինակներն ըստ բ.գ.թ., դոցենտ, բարբառակիր Ա. Սուվարյանի (բանավոր հաղորդում):

[59] Օրինակներն ըստ բ.գ.թ., դոցենտ, բարբառակիր Վ. Կատվալյանի (բանավոր հաղորդում):

դարվեստական ոճական առանձնահատկություններ: *Տեր*-ը բարբառային խոսքում հիմնականում աշխարհիկ բովանդակությամբ է կամ նշանակում է ընդհանրապես «հոգևոր սպասավոր»:

## ՄԱՏԵՆԱԳԻՏՈՒԹՅՈՒՆ


**Աղամյան Հ.,** – 1969, Մոտկան-Սասունի բարբառը (թեկն. ատենախոսություն), Երևան, 1969:

**Աթայան Է.,** – 2005, Հոգի և ազատություն, Երևան, 2005:

**Ալավերդյան Ս.,** – 1970, Արդվինի բարբառը (թեկն. ատենախոսություն), Երևան, 1970:

**Աճառեան Հ.,** – 1913, Հայերէն գաւառական բառարան, Թիֆլիս, 1913:

**Աճառեան Հ.,** – 1926, Հայերէն արմատական բառարան, Երևան, 1926, հ. 4:

**Աճառյան Հ.,** – 1952, Քննություն Վանի բարբառի, Երևան, 1952:

**Աճառյան Հ.,** – 1953, Քննություն Առտիալի բարբառի, Երևան, 1953:

**Աճառյան Հ.,** – 2003, Քննություն Կիլիկիայի բարբառի, Երևան, 2003:

**Աճառյան Հ.,** – 2009, Պոլսահայ անգիր բանահյուսություն, Երևան, 2009:

**Ամատունի Ս.,** – 1912, Հայոց բառ ու բան, Վաղարշապատ, 1912:

**Անդրեասյան Տ.,** – 1967, Սվեդիայի բարբառը, Երևան, 1967:

**Ասատրյան Մ.,** – 1962, Ուրմիայի (Խոյի) բարբառը, Երևան, 1962:

**Ասատրյան Մ.,** –1968, Լոռու խոսվածքը, Երևան, 1968:

**Բաղրամյան Ռ.,** – 1961,Կոզենի բարբառը, Երևան, 1961:

**Բենսե, –** Բուլանուխի բարբառը, հ. 2, ՀՀ ԳԱԱ լեզվի ինստիտուտի ձեռագիր նյութ:

**Գաբամաճեան Ս.,** – 1910, Նոր բառգիրք հայերէն լեզուի, Կ. Պօլիս, 1910:

**Գալստյան Լ.,** – 2006, Աշնակ գյուղի բարբառային իրավիճակը (թեկն. Ատենախոսություն), Երևան, 2006:

**Գասպարյան Գ.,** – 1947, Բառարան Խ. Աբովյանի երկերի (բարբառային և օտար բառեր), Առանձնատիպ Խ. Աբովյանի երկերի 4-րդ հատորից, Երևան, 1947:

**Գասպարյան Հ.,** – 1966, Հաջընի բարբառը, Երևան, 1966:

**Գևորգյան Լ.,** – 2012, Շիրակի տարածքի խոսվածքների փոխհարաբերությունը (թեկն. ատենախոսություն), Երևան, 2012:

**Գրիգորյան Ս.,** – 2012, Նորաբանությունները Գրիգոր Տաթևացու «Գիրք հարցմանցում», Ջահուկյանական ընթերցումներ, Երևան, 2012, էջ 64:

**Երրորդութիւն**, – 1870, Երրորդութեան վարդապետութեան վրայ քրիստոնէից եկեղեցիներուն ունեցած տարբերութիւնները, «Յոյս» օրագիր բանասիրական, զԱրմաշ ի վանս Չարխափան Սուրբ Աստուածածնի, 1870, N 46, էջ 92–94:

**Թումանյան Հ., –** http://granish.org/hovhannes-tumanyan:

**Թուրշյան Հ.,** – Վանի բարբառի բառարան (ՀՀ ԳԱԱ հնագիտության և ազգագրության ինստիտուտի ձեռագիր նյութ):

**Ժամագիրք ատենի, –** 1999, Վաղարշապատ, 1999:

**Ժամագիրք ատենի, –** 2003, Անթիլիաս, 2003:

Ժամանակակից հայոց լեզվի բացատրական բառարան**, – Երևան, 1969–1980:**

**Լուսենց Ա., –** 1982, Արեշի բարբառը, Երևան, 1982:

**Կարստ Յ.,** – 2002, Կիլիկյան հայերենի պատմական քերականություն, Երևան, 2002:

**Համբարձումյան Վ.,** – 2002, Հայերեն *սատված* բառի ծագումն ու տիպաբանությունը, Երևան, 2002:

**Հանանյան Գ., –** 1995, Սվեդիայի բարբառը (Խտրբեկի խոսվածքը), Երևան, 1995:

**Հանեյան Ա.,** – 2005, «Ծիածան» հասկացության բառազուգաբանությունների լեզվաաշխարհագրական բնութագիրը և հոգևոր–մշակութային արժեքը, Նյութեր մաշտոցյան գրերի 1600-ամյակին նվիրված գիտաժողովի, Երևան, 2005, էջ 87–104:

**Հոգին սուրբ,** – 1870, Հոգւոյն սրբոյ վրայ քրիստոնէից եկեղեցիներուն մէջ եղած տարբերութիւնները, «Ցոյս» օրագիր բանասիրական, զԱրմաշ ի վանս Չարխափան Սուրբ Աստուածածնի, 1870, N 48, էջ 141–142:

**Ղանալանյան Ա.,** – 1951, Հայկական առածանի, ՀՍՍՌ ԳԱ հրատ., Երևան, 1951:

**Ճիզմէճեան Պ.,** – 1954–1957, Հայերէն աշխարհաբար լեզուի լիակատար բառարան, Հալէպ, 1954–1957:

**Մկրտչյան Ն.,** – 1971, Բուրդուրի բարբառը, Երևան, 1971:

**Մսերեանց Մ.,** – 1861–1862, Ստուգաբանութիւն անուանս *Աստուած*, «Ճռաքաղ» (ամսագիր), Մոսքուա, 1861–1862, հ. երրորդ, էջ 8–10:

**Ջահուկյան Գ.,** – 1972, Հայ բարբառագիտության ներածություն, Երևան, 1972:

**Սարգսեանց Ս.,** – 1883, Ագուլեցոց բարբառը (զօկերի լեզուն), Մոսկվա, 1883:

**Վարդանյան Ս.,** – 2009, Կրոնափոխ համշենահայերի բարբառը, բանահյուսությունը և երգարվեստը, Երևան, 2009:

**Տեր-Պողոսյան Գ.,** – 1921–1922, Հավարիկի բարբառը, «Բանբեր Հայաստանի գիտական ինստիտուտի», Վաղարշապատ, 1921–1922, գիրք Ա–Բ, էջ 177:

**Քյուփեյան Հ.,** – 2008, Բեյլանի բարբառը (թեկն. ատենախոսություն), Երևան, 2008:

**HAYKANUSH MESROPYAN**
*PhD in Philology*
*Institute of Language of NAS RA*
haykanushm@mail.ru

# THE SYMBOL OF «GOD» IN ARMENIAN DIALECTS

## SUMMARY

"God" is identified as a symbol of freedom. According to his theory, the freedom of individuals will increase into actual freedom if the Devine Word i.e. the Conscience speaks inside their soul (Atayan "Soul and Freedom" page 137).

The Divine Word is not expressed in various word signs in dialect vocabulary. In order to state the symbol of freedom or the mysterious existence a range of words with their phonetic variants are used in dialects.

As in the literary Armenian language, in the Armenian dialects as well, God is characterized by a number of specific epithets. Different Armenian dictionaries contain a number of words and phrases defining God *(For example: the most pious, a healing of all, the king of all, the most striking of all, the care of all, etc.).* The majority of these words have a narrow range and are literary. They are found only in religious literature.

The word *աստված* (astvac) – "God" in some dialects has saved its literary form (Erznka, Artamet, Berkri, Adapazarı, Manazkert, Julfa and so on.). In many dialects there are about 55 different phonetic isoglosses [*աստվօճ* (astwawj), Marash, *ըսդվաճ* (əsdvaj), Sasoun, Ynguznag, *ասպած* (aspac), Van, Timar, *ասբօճ* (asbawj), Zeytun].

The concept of God and the divine power in the dialect vocabulary is associated with of the words *lord, the owner, the light, the sky, infinite, blue, azure.*

The word "God" is expressed in the Holy Trinity, and the synonyms of the words Father, Son and Holy Spirit, are very rarely found. In Armenian dialects the most common dialectal phonetic variants of the word "God" can be met. Structures with different roots are not widespread in popular speech.

In the course of our research in the area of Aramo Antakya we met only one dialectal example with the meaning of the Holy Trinity. *Սաւրփ Էրօրթօէյնա զԴուդա ու զՋըթթա ու զՀօքէյն սաւրփա* (sawrp$^{c}$ ērawrt$^{c}$awēyna zduda u zĵət$^{c}$t$^{c}$a u zhawk$^{c}$ēyn savrp$^{c}$a).

The individuals who prioritize their ego in the core of their soul accept Freedom-God as the lord master and judge as well as the lord of the heavens and the earth, all creations and future creations entitling him *վէրնէրի տէր* (vērnēri tēr) "master of heavens" (Ararat), *իյգինք և իյգիյ ընձեղանի* (iygink$^{c}$ ev iygiy ənjełani) – "the lord of the world and the sky" (Hajn), *դ'աղավէր* (d'agavēr) – "judge" (Sebastia), *է́յնավօր դադավօր* (ḗynavawr dadavawr) – "heavenly judge" (Polis), etc.

In our national language mentality the concept of God is associated with the signs of the boundlessness, the heavens, blue, azure. *յէրէ կ'յապ'յուտ* (yērē k$^{y}$ap$^{y}$ut) – "blue above" (Ghapan), *թ'առ աստված* (t$^{c}$aŕ astvac)- "blue God" (Gharabagh), *յեռռնային* (yeŕŕnayin) – "heavenly" (Sghnagh), *անխուն* (anxun) "the only one", *անեզական* (anezakan) – "unrivalled" (Van), *անահուն* (anahun) – "boundless" (Aparan, Bulanukhum) etc.

In Armenian dialects we frequently meet word combinations, idioms, oaths, proverbs, blessings, etc. formed with the word *աստված* (astvac) "god". Such language coinages have both positive and negative values. [For example: *աստոծ միչին ման ա էկել* (astoc mič$^{c}$in man a ēkel), Lori, word for word translation – "The Lord was walking there", which means "this area is very nice", *աստուծո հըղէցը վրա իլալ* (astuco həłēc$^{c}$ə wra ilal), *Karabakh*, word for word translation – "to be on the way of The Lord", which means "don't lose conscience and human type", *ասպաճ քէզի խէնդասնա օչ* (aspaj k$^{c}$ēzi xēndasna awč$^{c}$), Hamshen, word for word translation – "The Lord doesn't give you joy" which means "you don't earn luck, you are a bad man", etc.].

These dialectal cases confirm that human being accepts only the undoubted and absolute dominance of the Creator, dominance which doesn't limit the freedom of the individual. Both God and human are dominant in their territory.

**АЙКАНУШ МЕСРОПЯН**
*Кандидат филологических наук,*
*Институт языка НАН РА*
haykanushm@mail.ru

# СИМВОЛ «БОГ» В АРМЯНСКИХ ДИАЛЕКТАХ

## РЕЗЮМЕ

В *народном мышлении* Бог воспринимается как символ свободы и света. Недоступность и необъяснимость в народе называют светом – противопоставляя тьме. Уровень национального духа выражается религиозным символом, то есть – «Всевышним».

Языковая версия символа «Бог» идет от индоевропейского праязыка, принадлежит к активному словарному слою армянского языка, типична для всех стадиях литературного армянского языка, а также региональным языковым вариантам. Слово «Бог» очень часто встречается в армянской писменной речи, является ключевой единицей христианской терминологии (В. Амбарзумян, «Этимология слова «Бог», 2002, 11).

Со временем рассматривается концепция понятия «бог»: происходит семантическая идентификация. Взамен формы множественного числа «Боги» – указывающего на политеизм, начинает употреблятся единственное число, что подчеркивает христианскую доктрину единобожия, в лице Иисуса Христа.

Как в литературном армянском языке, так и в армянских диалектах Бог характеризуется рядом специфических эпитетов. В разных словарях армянского языка изложен ряд слов и словосочетаний определяющих Бога (например: *самый благочестивый, лечащий всех, царь всех, самый яркий из всех, заботящийся обо всех* и т. д.). Большая часть выражений имеет узкий диапазон, является книжной языковой единицей и встречается только в религиозной литературе.

Слово *աստված* (astvac) «Боже» в некоторых диалектах сохраняет литературную форму (Ерзнка, Артамет, Беркри, Адабазар, Маназкерт, Джулфа и т. д.). Во многих диалектах имеются разные фонетические изоглоссы, число которых 55 [*աստվօճ* (astwawj), Мараш, *ըսդվաճ* (əsdvaj), Сасун, Ингузнаг, *ասպած* (aspac), Ван, Тимар, *ասբօճ* (asbawj), Зейтун].

Символ «Бог» и божественная сила в диалектном словарном запасе ассоциируются со словами *отец*, *владыка, свет, небо, безграничный, голубой, синий.*

Со словом «Бог» ассоциируется Святая Троица, и редко встречаются синонимы к понятиям «Отец», «Сын» и «*Святой* Дух». В армянских диалектах чаще всего встречаются диалектные фонетические варианты слова «Бог». *Разнокоренные* структуры в народной речи не имеют широкого распространения.

В процессе нашего исследования в местности Арамо Антакии встретился лишь один диалектный пример, означаюший «Святая Троица»: *սավրփ Էրօր-թօէյնա զԴուդա ու զՋըրթթա ու զՀօքէյն սավրփա* (sawrp$^{c}$ ērawrt$^{c}$awēyna zduda u zĵ∂t$^{c}$t$^{c}$a u zhawk$^{c}$ēyn savrp$^{c}$a).

В диалектной речи слово «бог» имеет следующие синонимы: *վէրնէրի տէր* (vērnēri tēr)» владыка всевышний» (Арарат), *իյգինք և իյգիյ ընձեղանի* (iygink$^{c}$ ev iygiy ∂njełani) – «создатель неба и земли» (Аджн), *դ’ագավէր* (d’agavēr) – «судия» (Себастия), *է́յնավօր դադավօր* (ḗynavawr dadavawr) – «небесный судья» (Константинополь).

В армянских диалектах часто встречаются словосочетания, фразеологизмы, клятвы, пословицы, благословения и т. д. составленные со словом *աստված* (astvac) «бог». Такие языковые образования имеют и положительные, и отрицательные значения [например: *աստոծ միչին ման ա էկել* (astoc mič$^{c}$in man a ēkel), Лори*,* дословно – «бог проходил там», то есть «эта местность очень красива», *աստուծո հըղէցը վրա իլալ* (astuco h∂łēc$^{c}$∂ wra ilal), Карабах, дословно – «быть на пути бога», то есть «не потерять совесть и человеческий образ», *ասպաճ քէզի խէնդասնա օչ* (aspaj k$^{c}$ēzi xēndasna awč$^{c}$), Амшен, дословно – «Бог тебя не радовал бы», то есть «ты не достоин добра, ты плохой человек» и т. д.].

Исследование показывает, что наиболее интересные *словообразовательные* варианты со словом «Бог» характерны для западной группе армянских диалектов. Религиозной диалектной речи не типичны *словообразования со словами* «Творец», «Искупитель», «Всевышний», «Владыка» и т. д.

